

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ

## Ձյուն և ծաղիկ

— Ի՞նչ արավ, հայրի՛կ,
Երկինքն ի՞նչ արավ՝
Ձյունի տակ ծածկեց
Հյուսիս ու հարավ:
Այս ինչքա՞ն իջան
Փաթիլներ մեծ-մեծ.
Սարի ու ձորի
Ճամփեքը փակվեց:
— Բան չկա. տղաս.
Լավ է լինելու,
Ինչ էլ պատահի՝
Գարուն է գալու:
Թող փաթիլներով
Սար ու ձոր լցվի,
Ձյունով փակվածը
Ծաղկով կբացվի:

## Ո՞րն է որից գեղեցիկ

Գեղեցիկ է,
Երբ երկնքում հավքեր կան
Երբ ծառերին կան բներ,
Բների մեջ ձագեր կան:
Գեղեցին է, երբ ձկնիկը
Ն՞ի պահ ցատկում է ջրից,
Կտրվում է միայն մի պահ
Այս երկինք ու երկրից:
Գեղեցիկ է, երբ խ՜նթորեն
Արջն ու քոթոթն են խաղում
Երբ արև է, սակայն ամպը
Բարակ անձրև է մաղում:
Գեղեցիկ է, երբ որ պախրան
Ձագուկին կաթ է տալիս.
Մայրն իր մանկան թաթը բռնած՝
Մեկտեղ այգի են գալիս:
Գեղեցիկ են սարն ու քամին,
Եվ ծաղիկները հանդում,
Բայց ավելի գեղեցիկ չե՞ն
Մանուկները բարուրում...

Նկարը՝
ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
## № 12 ● 1985

Լույս է տեսնում 1923 թվականից



Շապիկի 1-ին էջը Խորեն Հակոբյանի

ԿԱՐԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ



# ԴԵՌ ԱՆԲԱՐԲԱՌ ՄԻ ՄԱՆՈՒԿ...

## Մանկություն

Գաղթականների մեջ էր դարբին Գրիգորը:

Պատմում էին, որ նրա պապերը հնագույն ժամանակներից ի վեր եղել են Ղրիմի խանական երամակների պետերը և ժառանգաբար ստացել պայտարապետի պաշտոնը, որը բավականին բարձր դիրք էր համարվում խանության մեջ:

Նոր հիմնադրված քաղաքում առաջին ծնունդներից մեկը վարպետ Գրիգորի որդին էր՝ Ղազարը, որը մեծացավ հոր դարբնոցում, կապտավուն բոցով վառվող քուրայի կողքին: Երբ նրա ուժը պատեց գետնից պոկել ամենափոքր մուրճը, Ղազարը կանգնեց հոր դիմաց, զնդանի առաջ: Այնուհետև հոր ու որդու ռիթմիկ հարվածներից ծնված կայծերի խրձերն էին սփռվում չորսբոլոր:

Տարիներ անցան, և տարիների հետ էլ աշխարհից անցավ-գնաց նաև վարպետ Գրիգորը՝ որդուն ժառանգություն թողնելով պապենական արհեստը և դարբնոցը:

Երկաթագործ Ղազարը կամ, ինչպես ինքն էր ներկայանում՝ Ղազար Դեմիրճյանը, քաղաքի այն արհեստավորներից էր, որոնց մասին ասում են, թե՝ «Զուտ ոսկով ու արծաթով գուցե հարուստ չէին, բայց արհեստը նրանց ձեռքի ոսկե ապարանջանն էր»:

Ի դեպ, արհեստները Դոնի Նախիջևանում բազմազան էին, իսկ արհեստավորները բարի համբավ էին վայելում՝ բարեխիղճ էին, ազնիվ ու մեղվի պես ժրաջան: Եվ պատահական չէր, որ Նախիջևանի վահանաձև զինանշանը, անկյունագծով երկու մասի բաժանվելով, ձախ կողմում, արծաթավում դաշտի հենքի վրա, ոսկեգույն մեղուներ էր պատկերում, իսկ աջում՝ ոսկե փեթակ, որը մի բուռ հայության բնակատեղին էր խորհրդանշում:

...Երիտասարդ դարբին Ղազարը 1814 թվականին ամուսնացավ նախիջևանցի արհեստավոր Պետրոս Գյումուշյանի դստեր՝ Տիրուհու հետ: Նրանք իրենց անդրանիկ զավակի անունը, ի պատիվ պապի, դրեցին Գրիգոր: Ընտանիքում երեխայի ծնունդով թեև հոգսերն էլ ավելացան, բայց երջանկություն էլ եկավ:

Երջանիկ այդ օրերը, սակայն, շուտ վերջացան: Վարպետ Ղազար Դեմիրճյանը կորցրեց կնոջը՝ Տիրուհուն, և երեք տարեկան երեխան գրկին, ստիպված էր ամուսնանալ երկրորդ անգամ: Երկրորդ ամուսնությունից ծնվեցին Լուսեղենն ու Հակոբը, որոնց նույնպես վիճակված էր որբանալ: Եվ ար-

դեն երեք երեխայի հայր վարպետ Ղազարը ամուսնացավ երրորդ անգամ: Այս կինն էլ շատ շուտով վախճանվեց, վարպետ Ղազարի որբերի թիվն ավելացնելով նորածին մի երեխայով, որը առաջին աղջիկ երեխան էր դարբնի ընտանիքում: Նրա անունն էր Գայանե:

Հիմա առավել ևս կասկած չէր կարող լինել, որ երեք տարբեր մայրերից ծնված չորս զավակներին բավական չէր միայն հոր խնամքը: Երեխաներին անհրաժեշտ էր մայրական խնամք: Չորրորդ ամուսնությունը անխուսափելի էր:

Այս անգամ վարպետ Ղազարի ընտրությունը կանգ առավ որբևայրի Մարիանեի վրա: Նա համաձայնեց մայրություն անել Ղազարի չորս զավակներին:

Ղազարն էլ, իհարկե, պատրաստակամ էր հայրություն անել Մարիանեի... չորս որբերին:

Այս նոր ամուսնությունից Ղազարն ու Մարիանեն ունեցան ևս չորս երեխա: Նրանցից երկուսը՝ փոքրիկ Գաբրիելն ու Ծաղկազդեն, դժբախտաբար վախճանվեցին:

Միքայելը՝ Ղազարի և Մարիանեի երկրորդ զավակը, ծնվեց Դոնի Նախիջևանի 31-րդ գծի թիվ 39 փայտաշեն միհարկանի տանը, 1829 թվականի նոյեմբերի 2-ին:

Դժվար չէ պատկերացնել, թե ինչպիսի խոհեմություն, համբերություն և արդարամտություն էր պետք հաշտ ու համերաշխ ապրելու համար մի ընտանիքում, որտեղ ճակատագրի բերումով մեծանում էին չորս տարբեր մայրերի միմյանց խորթ տասը զավակներ:

Բազմանդամ ընտանիքի հոր գործը գնալով դժվարանում էր: Նա առայժմ դեռ կարողանում էր ծայրը ծայրին հասցնել, բայց ժամանակները աննկատելիորեն փոխվում էին:

Ապրելով աշխարհագրական մի այնպիսի հարմար վայրում, որտեղից հնարավոր էր աշխույժ առևտուր սկսել ոչ միայն Ռուսիայի խորքերում գտնվող քաղաքների, այլև հեռավոր երկրների հետ, նախիջևանցիները գերադասեցին վաճառականությունը: Արհեստի «ոսկե ապարանջանը» ձեռքին աշխատավորի վիճակը հետզհետե դժվարանում էր: Արհեստավորները նավահանգստում մշակություն էին անում՝ նավամբարները լցնելով Ռուսիայից բերված ու նաև տեղում ստեղծված բարիքներով: Այնուհետև, նախիջևանցի վաճառականների նավերը ելնում էին հեռավոր ճանապարհորդության, լողում էին դեպի Ղրիմ ու Օդեսա, դեպի Պոլիս և Հունաստան, դեպի Իտալիա, Ֆրանսիա, Անգլիա...

Արհեստավորներից շատերի պես վարպետ Ղազարն էլ արդեն որոշել էր առևտրի մի փոքրիկ գործ սկսել, ուստի հենց սկզբից Միքայելին թույլ չտվեց մոտենալ դարբնոցի քուրային ու զնդանին, մանավանդ որ տղան էլ վտիտ էր ու ջուլակազմ:

Ի՞նչ ապագա կարող էր երազել որդու համար նախիջևանցի հայրը, եթե ոչ վաճառականություն: Իսկ վաճառականությամբ զբաղվելու համար, հայտնի բան է, անհրաժեշտ էր մի քիչ գրաճանաչություն, մի քիչ թվաբանություն ու մեկ էլ աշխարհագրություն իմանալ:

Քաղաքում դպրոցներ չկային: Նախիջևանցիները բավարարվում էին տնային վարժարաններով, որպիսիք բացում էր այս կամ այն քահանան կամ սարկավագը՝ երեխաներին գրաճանաչություն և կրոն սովորեցնելու համար:

Վարպետ Ղազարը որդուն ուղարկեց Օգսենթ Եղիշեի վարժարանը, որը ոչնչով չէր տարբերվում քաղաքի մյուս տնային վարժարաններից:

Այն աշակերտների համար, ովքեր զլանում էին դասերը սերտել, գոյություն ունեին միևնույն մշակված պատիժները: Նրանց կամ ճիպոտով ծեծում էին, կամ էլ ստիպում էին մերկ ոտքերով ծնկի գալ գետնին փռած խճաքարերի վրա: Այդ պատիժներից ոչ ոք չէր կարողանում խուսափել: Իզուր չէր, որ ծնողները երեխաների անկարգությունները սաստելու համար սպառնում էին, թե կուղարկեն վարժապետի մոտ՝ դաս սերտելու:

Օգսենթ Եղիշեն չհասցրեց Միքայելի մեջ խեղդել հետաքրքրասեր, ուշիմ երեխային. յոթ տարեկան մանչուկը մեկ ամսվա ընթացքում ավարտելով այբբենարանը, հեգարանը և Սաղմոսը, կարդում էր մեկ-երկու տարի վարժարան հաճախած աշակերտներից ոչ պակաս:

Վարպետ Ղազարը, տեսնելով որդու ընդունակությունները, առաջադիմությունը և ուսման սերը, մյուս կողմից էլ՝ վարժապետի տգիտությունը, հանեց երեխային Օգսենթ Եղիշեի վարժարանից և «տվեց նրան Տեր-Գաբրիել Պատկանյան քաջ հայկաբան քահանային, որն այն ժամանակ Նախիջևանում էր և վարժապետություն էր անում»,— գրում է Ականատեսը:

Տվեց նրան ու, ինչպես այն ժամանակ ընդունված էր, ասաց.

— Ես որդուս մարմին տվի, իսկ դու նրա մեջ հոգի դիր:

(շարունակելի)

**ԱՇՈՏ ՔՈՉՔՈՆՅԱՆ**
Սոչի, Վերին Բերանդա գյուղի
դպրոցի դիրեկտոր

# Անդորրություն

Աշտեյն լեռն էր իրիկնային
Երկինքն ի վեր խարսխվել,
Չէր հասկացվում՝ հեքիա՞թ էր հին,
Թե՞ քարեղեն առասպել:

Երկնքի մեջ՝ երկնքից բիլ
Աշտեյն լիճն էր վետվետում.
Ու երկինքը կաթիլ-կաթիլ
Այն լճի մեջն էր կաթում:
Կապտածրար
Լաջվարդն ի վար՝
Լեռան շուրջը և հեռուն,
Անդորրություն էր ծայրից ծայր,
Երանություն անանուն:

●

Ով Աշտեյնի լուսաթովիչ
Առավոտը չի տեսել,
Նա չի տեսել առավոտ ջինջ,
Նա առավոտ չի տեսել:

Արևն հա-հա պետք է որ գա,
Բայց չի գալիս, չի ծագում,
Մինչ Աշտեյնը արքայական
Իր ծիրանին չի հագնում:

Նախ՝ վառվում է թագը գլխին,
Հրդեհվում է ծիրանին,
Բոց է դառնում մեջքի գոտին,
Բոցն ընկնում է լանջերին:

Հովիտներն են ծփում-ծափում,
Ալ ծեգի տակ կեծկեծող,
Միածաններ են առկայծում
Ծաղկից ծաղիկ, ցողից ցող:

Աղբյուրները այդ վայրկյանին
Այլ ճվագ են կարկաչում,
Այդպես միայն հազարից մեկ
Հովվի սրինգն է կանչում:

●

Սարահարթն է սարահարթին
Ուսին առած վեր տանում,
Կիրճը հալվել կիրճի շուրթին՝
Համբույրից չի կշտանում:

Քարափները՝ բերդագմբեթ
Աշտարակներն ուսերին,
Աշտեյն սարի պահակներն են՝
Առանց տեգ ու սուսերի:

Քարե մեռյալ ծովն է ցածում
Աշտեյն լեռը ողողել,
Քարն է քարին քարով բախվել,
Եվ շառաչն է քարեղեն:

Իսկ վերևում Աշտեյն լիճն է՝
Աշտեյն լեռան գագաթին,
Որպես մի կում կապույտ քրքիջ՝
Մեջը մի կում գավաթի:

Ով իմանա՝ իր ափերի
Գորգերը երբ են հյուսել,
Իր առաջին սոսափների
Երգը որ աստղն է լսել:

Հիմա վայրի քարայծներն են
Այդ գորգերին արածում,
Ճախրի ելած արծիվները
Սավառնում իր լայն ծոցում:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ՎԱՆՈ ՍԻՐԱԴԵՂՅԱՆ

# Միրո հասակ

Նկարը՝ ՍԱՄՎԵԼ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Տղան գիտեր, որ դժվարը կռվին նախորդող րոպեներն են: Սպասկացող թշնամանքի մթնոլորտին նրա սիրտը չէր ընտելանում: Թշնամանքի թույնը կաթում էր անքեն սրտի նուրբ թաղանթին և սրտխփոցը դղրդում էր ականջներում: Բայց դա անցնում էր առաջին, երկրորդ հարվածն ստանալուց կամ հասցնելուց հետո:

Նա քաջ գիտեր առաջին զարկի առավելությունը, բայց չէր կարող առանց ուղեղի մթագնումի մարդու աչքերին նայել ու խփել, և, որպես կանոն, առաջինը խփում էին իրեն: Դա այնքան էլ սարսափելի չէր: Վատը կռվից մնացող քենն էր: Այդ ոխակալ անվստահության ձըգվածությանը նրա սիրտը չէր դիմանում: Ելքը այն էր, որ հակակշիռ թշնամանքով մտասևեռվեր, թշնամանքի օդով սնվելով՝ իր կորովը տեղը պահեր, բայց դա ինչ կյանք էր... Շուրջբոլորը այնքան ներդաշնակ ու կուսությունից շեղող բան կար, տղայի միտքը հափշտակող այնքան գաղտնիք կար ծալ-ծալ բացվող աշխարհի վրա, և նա այնքան ցրված էր լինում, այնքան անպատրաստ, զգոնությունը կորցրած այնքան, որ այս անգամ էլ առաջինը խփում էին իրեն: Եվ շատ դեպքերում պատասխան չէին ստանում:

Հիմա այդ կյանքը անցած շրջան էր: Եթե առաջ կարելի էր անձնական վիրավորվածությանը կարևորություն այնքան էլ չտալ, կարելի էր մի բան էլ կուլ տալ, հիմա ուրիշ էր: Իր արժանապատվությունը այսուհետև իրենից բացի վերաբերվելու է նաև մեկին: Հարաբերությունները պարզելու համար ընդամենը երեք-չորս օր ժամանակ կար: Օր կորցնել չէր կարելի: Մինչև նրա գալը ինքը պիտի Մեծառեխին կամ ծեծած լինի կամ աչքի փուշը կոտրած լինի: Շենում նրան ծուռ նայող չպիտի լինի: Նրա ներկայությամբ իրեն բան ասող չպիտի լինի:

«Վերջ,— ասաց տղան՝ հայելու առաջ աջ դաստակը վիրակապով փաթաթելիս:— Խելոք ենք եղել, ծեծ ենք կերել, ծաղր ենք հանդուրժել՝ անցած լինի: Ձեր արածը ձեզ հալալ լինի, այսօրվանից՝ վերջ: Բանաստեղծություն-բան գրելը հետաձըգվում է անորոշ ժամանակով...»:

Նա դժվար հասավ այս որոշմանը: Երբ մտածում էր նրա մասին, համակվում էր վճռականությամբ, բայց վճռականությունից բան չէր մնում աղջիկը մտքում չեղած ժամանակ: Իսկ երբ վերստին մտաբերում էր, հարկ էր լինում ոգու կորովը շնչի բերել մեռյալ կետից: Բայց ամառային արձակուրդները մոտենում էին, ամեն ամառ հովեկ աղջիկը արդեն նրա մտքում կար անբացակա, և մտադրությունը դարձավ վճիռ:

Այնինչ մարմնով պատրաստվում էր գարնան սկզբից: Ակումբի բակից տուն էր քարշ տվել երկու փթանոց գիրերից մեկը ու կպել դրան... Նրա մարզվելը սկըզբում, իրոք, նման էր կպչել-մնալու: Մեկա ղը հաստոտ ըմբիշի նման իրար չէր գա ոս, տղան թպրտում ու պարում էր դր․ շուրջը, երկաթը տղային ծալում-ծալծըլ ւմ, հակում էր հողին, ասես ուզում էր քս․չել իր պատ, հոծ ընդերքը, տղան գալարվում, բայց պոկ չէր գալիս: Երկու ելք կար. կամ պիտի ինքը երկաթին հլու՝ գետինը մտներ, կամ՝ երկաթը գետնից կտրեր: Երրորդը չկար: Թողնել-գնալը բացառված էր: Տղան ասում էր ինքն իրեն. «Ես՝ չէ, երկաթն է ձեռքիցս բռնել, մինչև գետնից չկտրվի՝ բաց չի թողնելու: Պիտի կտրվի»:

Նա շատ լավ գիտեր, որ մնացած մի քանի ամսում ինքը ուժից չի տրաքվելու, բայց որ երկաթը գլխից վեր հանելու ձևը պիտի գտնվի՝ դա անկասկած էր: Այն օրը, երբ ծանրությունը գլխից վեր հանեց, իր գործելու ժամն է լինելու: Ծրագրված էր երկու կռիվ: Նույնիսկ երեքը: Քանիսր որ անհրաժեշտ եղավ:

Հիմա կանգնած է զգեստապահարանի հայելու առաջ, հագած ունի անթև շապիկ, բազուկների մկանունքը դեռ փքված են, դաստակը՝ պնդված, և կենտրոնացած պատրաստվում է կռվի գնալ մի ոհմակի դեմ և հետր գնացող մեկը չունի, որ իր թիկունքին կանգնի: Եղբայրը մեծ է, ընկերների ոչ բարով թիկունքը ինքն է:



Այսպես անթիկունք գնալու է նրանց թաղը, ովքեր կռվում են միշտ խմբով, միշտ թաղովի, միշտ գեղովի՝ նույնիսկ մեկի դեմ:

Տղան անուշ մի թախիծով խղճում էր իրեն: Կռվի մասին մտածում էր արդեն որպես եղած բանի, իրեն տեսնում էր կարգին ջարդված, բայց աղջկա աչքերի մեջ շիտակ նայելիս:

«Կինո մի սարքի»,— ասաց տղան, դուրս եկավ տնից և հանգիստ էր: Կամ վճռական էր: Կամ արդարությունը իր կողմն էր: Նա փորձով գիտեր. երբ մեղավոր է, ինքը թույլ է, նույնիսկ վախկոտ է, և թևն է թալուկ, երբ մեղավոր է: Արդարության մի զորեղ բնազդ նրան կյանքի այս կռվի մեջ դարձնում է երիցս անպետք... Բայց այսօր իրեն ուժեղ էր զգում:

Լավ կլիներ Մեծաբերանի արբանյակները լրիվ կազմով հետը լինեին: Կտեսնեին՝ դաս կառնեին, և այս մի կռվով գուցե թե բանը վերջանար: Նրանք ուժից վախեցող են: Ծուն կռվեցնողների նրանց ցեղը այդպես է՝ մեկի դեմ գնում են երեք հոգով, բայց երկուսի դեմ չորսով չեն գընա, երեքի դեմ տասից պակաս եղան՝ չեն գնա: Թող բոլորով հավաքված լինեն, միայն թե երեք հոգուց ավելի վրա չգան, միայն թե իրենց սազական վարքով թիկունքից քարով չխփեն... Ժամանակից շուտ չխփեն:

Կռվի պատրվակ սարքել պետք չէր, իր ներկայությունն իսկ պատրվակ էր: Հարկավոր էր միայն սպասել: Բայց անկամ, անդեմ սպասելուց վճռականությունը կորցնելու վախ կար: Չէ, կարիք չկար տնից առած թափը կոտրելու:

Տղան նայեց կոխ բռնողներին և անփույթ թքեց: Ոչ թե ոտքի տակ, այլ հենց այդպես՝ հեռու և անփույթ: Սա արդեն վերաբերմունք էր նրանց հանդեպ, բայց պակաս թվաց, և տղան կոխի կպածներից մեկի գլխարկը ոտի թաթով թռցրեց օդ: Արարքը այնքան արտառոց էր, որ կոխի մեջ տաքացածներն իսկ նկատեցին: Եվ իսկույնևեթ կոխը թողին:

Գլխարկի տերը հևալով նայեց տղային, նայեց իր ընկեր Մեծաբերանին՝ սա ծըպտում էր քաջալերիչ: Գլխարկի տերը ըսպասում էր շունչը տեղը գա, և միջոցը մեր օգտին եղավ: Նրա վրա ուժեր վատնելը անիմաստ էր: Լավ է ուժեղը դեմդ լինի, քան թիկունքիդ, քան շուրջբոլորդ մի տեղ հածելիս: Հետո, թիկունքդ ավելի

ապահով կլինի, եթե նրանք վստահ լինեն, որ վերջիվերջո ջարդ են տալու։

— Ինչի՞ ես բերանդ ծռել,— տղան կանխեց գլխարկի տիրոջ վրա քշելը։

— Ե՞ս,— ապուշ կտրեց Մեծաբերանը։

— Չէ, մորքուրդ,— նրանց հանգով ասաց տղան։

— Դե տեղդ կանգնի։

Կռվելը նրա համար խաղուպար էր, նա ուրախ էր, որ առանց ջանքի գործ է բացվել, բայց մի տեսակ շփոթված էր կամ վիրավորված, որ մարտահրավերը խլված է իր ձեռից։

Տղայի սիրտը մի պահ նվաղեց, հետո թունդ առավ, նախահարձակման անծանոթ մի կիրք համակեց նրան։ Առաջին անգամ նա իր կամքով կռիվ էր անում և առավելությունը իսկույն զգաց... Ձախ արմունկով հարվածը առավ ու աջով խփեց, պատասխանը ստացավ կողին, բայց թույլ հարված էր։ Թափից հասկացվեց, որ խփողը աչքի առաջ հատուցում ունի, և դա նրա ուժը կիսել էր։ Նա միշտ խփել է խաղալու նման՝ անփույթ թափով։ Հիմա այդպես չկարողացավ։

Հակառակորդի թափը կոտրելը տղային գրեթե բավարարում էր, մնում էր առանց ծեծ ուտելու կռիվը դեպի վախճան տանել։

Տղան իրենց օղակողների թիկունքում տեսավ ընկերոջը ու սրտապնդվեց՝ համենայն դեպս կարեկից ունի։ Նույն պահին էլ մտահոգվեց՝ ընկերոջ դեմ ծեծվել չէր ուզում. առանց վկայի կերած ծեծը շուտ է մոռացվում։ Օգնություն էլ չէր ըսպասում։ Ընկերը նույնիսկ կռիվը խափանել չէր համարձակվի, նրա չնչին շարժումը անգամ դիտվելու էր պաշտպան կանգնել, և ռիմակը վրա էր տալու։ Ընկերը դա հասկանում էր։ Ռիմակին պատըրվակ էր պետք։ Նրանց առայժմ ետ էր պահում պարագլխի գերազանցության համոզմունքը, այլապես նրանց ինչի՞ն էր պետք պատրվակի պես դատարկ բանը... Այնուամենայնիվ, սառնասրտությունը չէր խանգարի։

Տղայի գործը դժվարացավ։ Խնդիրը այն էր, որ շան ծեծ չուտեր և ընկերոջը չմղեր հուսահատ քայլի։ Իսկ թե կարենար հավասար կռվել, այդ դեպքում էլ պիտի այնպես գործը տաներ, որ հակառակորդի գերազանցության պատրանքը մնար, և պիտի զգույշ, աստիճանաբար կռվելու նրա կամքը մեռցներ։

Տղան հարվածներ էր բաց թողնում ուսերին, կրծքին, ինքն էլ խփում կրծքին, ուսերին, վրան իջել էր մի հաշվենկատ թեթևություն, ճշգրիտ զգում էր հարվածի պահը, հարվածից հաջող խուսափում էր, իսկ հակառակորդը անակնկալից կորցրել էր իրեն, ձեռքերը թափահարում էր թարս ու շիտակ, և տղան հանկարծ գըլխի ընկավ. հակառակորդը հավասար կռվի համար պիտանի չէ, նրա ոգին ռիմակի մեջ է, նրա կորովը արթնանում է հակառակորդի քնած ժամին... Տղան ըզգաց, որ ուզած պահի կարող է չոքեցնել նրան։ Մի կարճ ժամանակ կռվի տարերքը նրան կլլավ, հաշտվեց ջարդված քիթուբերանով աղջկա առաջ երևալու հետ, մտահան արավ ընկերոջը, մի լիասիրտ հարվածի տենչով սիրտը ծուլ եղավ և անպաշտպան դեմքի վրա խոյացող ձեռքը փոքրոգաբա՞ր, ընկերո՞ջ համար, թե՞ հայի խղճով՝ վերջին պահին իր թափը կոտրեց ինչ-որ հրաշքով... Անճիշտ հարվածից սաստիկ ցավ զգաց և այստեղ կերավ աչքի տակին։ Բնազդով ափը տարավ աչքին ու ետ ցատկեց գոտեմարտելու նետված դիմացինից... հակառակորդը երևելի գոտեմարտող էր, եթե բռներ մեջքը կամ ոտքը՝ ինքը կորած էր, անպատիվ ծեծից փրկություն չկար։ Աչքի տակին ստանալով, տղան կորցրեց հակառակորդին տարածության վրա պահելու զգոնությունը, և երբ դեմինը երկրորդ անգամ վրա թռավ մեջքը բռնելու, ելք չըտեսնելով՝ տղան բռունցքով, կարճ դիմահար խփեց ճակատին։ Նետվողը չոքեց, զկռտոցի նման ձայն հանեց, տղան վախից մի պահ քար կտրեց՝ այդ պահին էլ ծոծրակին տվին, և այդ հարվածը նրան ազատեց հոգին կեղեքող կասկածներից։ Եվ մինչ հայհոյելով վրա կտային, մինչ կռվի քաշված ինքն ու ընկերը կտրորվեին ոտքերի տակ, տղան մի քանի պտույտ կատարեց օղակի ներսում և մի քանիսը վայնասունով մայրիկ կանչեցին...

Հետո տղան նստած էր իր մահճակալին, բացել էր մահճակալին կողով դրված զգեստապահարանի հայելապատ դուռը, հայելին արտացոլում էր մահճակալը, պատը, տղային, դեմը դրված աթոռը, աթոռին դրված ջրով բաժակը, տղայի բութը ջրի մեջ էր, շփում էր մատը, կզակը, այտի կապտուկը։ «Լավ էր»,— ասաց ու ժպտաց իրեն, բայց ժպիտը լրիվ չստացվեց, ջարդված շրթունքի ցավը նեղում էր։ «Շատ լավ էր»,— կրկնեց տղան և դարձյալ ժպտաց, այդպես ցավը ձգելով ժպտաց։

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

# Միամիտ հորաքույրս

(Իրողություն)

Կոլտնտեսուհի հորաքույրս հիվանդացավ և առաջին անգամ գնաց Երևան՝ պրոֆեսորի մոտ ստուգման:

— Պրոֆեսոր ջան, ջանս քեզ դուրբան, ամբողջ ջանըս ցավում է, դեղուճար ունես՝ արա…

Պրոֆեսորը ուշադիր զննեց հիվանդին և ասաց.

— Տիկին, մինչև «դեղ ու ճարը» հարկավոր է մըտնես ռենտգեն կաբինետ:

— Վա՜յ, պրոֆեսոր ջան, քանի՞ անգամ մտնեմ ու դուրս գամ… մինչև քեզ հասնելս՝ մտել ու դուրս եմ եկել:

— Ինչպե՞ս, չէ՞ որ դու նոր եկար,— հետաքրքրվեց պրոֆեսորը:

— Այսպես՝ առաջին հարկում մտել եմ, իններորդ հարկում դուրս եկել, էլ սրանից ավելի ի՞նչ եք ուզում:

— Հա՜, հասկացա,— պրոֆեսորը քահ-քահ ծիծաղեց,— տիկին, դու վերելակ ես մտել, ոչ թե ռենտգեն կաբինետ:

# Քաղաքացի Լիպոն

Ամառային արձակուրդներին Լիպոն գնացել էր գյուղ՝ տատի մոտ հանգստանալու:

— Լիպո ջան, առ դույլը, գնա աղբյուրը, հորթի և մեզ համար խմելու ջուր բեր:

— Գնամ, տատի,— կարճ կտրեց Լիպոն և վազեց դեպի աղբյուրը:

Նա, երբ տեղ հասավ, դույլը շտապ իջեցրեց ավազանը, կիսով չափ լցրեց ջրով, իսկ մյուս կեսն էլ լըրացրեց ծորակից: Այդ պահին ջրվորներից մեկը հետաքրքրվեց.

— Լիպո, ինչո՞ւ ջուրը լրիվ ծորակից չվերցրիր…

— Ի՜…,— ծոր տվեց Լիպոն.— ջրի կեսը հորթի համար է, կեսը՝ մեր խմելու…

ԱՐԱՅԻԿ ՍԱՀԱԿՅԱՆ
Կիրովական, № 2 դպրոց, 7-րդ դասարան



ԶՐՈՒՅՑՆԵՐ
ՀԱՅ
ԺՈՂՈՎՐԴԻ
ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ



**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# Վկայում են բառերը

Հովհաննես Թումանյանը գրել է. «Լեզուն է ամեն մի ժողովրդի ազգային գոյության ու էության ամենախոշոր փաստը, ինքնուրույնության ու հեռավոր անցյալի խոշոր դրոշմը, պատմության հեռավոր անցյալի կախարդական բանալին՝ հոգեկան կարողությունների ամենաճոխ գանձարանը, հոգին ու հոգեբանությունը»:

Մեր մեծ բանաստեղծի այս իմաստուն խոսքերի մեջ այժմ մեզ հետաքրքրում է այն, որ հայ ժողովրդի լեզուն նրա պատմության հեռավոր անցյալի կախարդական բանալին է:

Իրոք, հայոց լեզվի օգնությամբ մեր հեռավոր անցյալի շատ գաղտնիքներ են բացվում: Մեր լեզուն մեր պատմության վկան է: Մեր լեզուն վկայում է, որ հայ ժողովուրդը իր մայր ժողովրդից ծնվել է ու միշտ բնակվել այս լեռնաշխարհում:

Մի լեզվի բոլոր բառերը միասին կոչվում են բառապաշար: Լեզվաբանները շատ տարիների ընթացքում ուսումնասիրել են հայոց լեզվի բառապաշարը և ցույց տվել, թե նրա տարբեր մասերը ինչ ծագում ունեն: Այդ բառապաշարի գլխավոր մասը, առանցքը բնիկ հայերեն բառերն են, որոնք մեր լեզուն իբրև որդիական ժառանգություն ստացել է իր մորից՝ հնդեվրոպական մայր լեզվից: Այդ բառերից են, օրինակ՝ հայր, մայր, եղբայր, քույր, որդի, դուստր, թոռ, աչք, ձեռք, ոտք, ականջ, լեզու, քար, ջուր, լույս և այլն:

Բնիկ բառերի մի մեծ մասն էլ կապված է Հայկական լեռնաշխարհին հատուկ կենդանիների, բույսերի, ուտելիքների հետ: Օրինակ, այդ բառերից են այծ, աքաղաղ, գառ, էշ, եզ, կով, հավ, մաքի, աղվես, արծիվ, արջ, բորենի, ինձ, լուսան, առյուծ, ոզնի, ծիծեռնակ, կռունկ, ուրուր, ցին, իժ, լու, օձ: Սրանք բոլորը հայկական լեռնաշխարհին բնորոշ կենդանիների անուններ են (հին Հայաստանում առյուծներ էլ են եղել): Կան նաև այսպիսի բնիկ հայերեն բառեր՝ մածուն, թան, չիր, կորկոտ, գարի, դեղձ, ծիրան,

այգի, ածու, գինի, հերկ, արոտ, արոր, արտ, երկաթ, աղորիք, գոմ, թաղ, թանկ, դեղ և այլն. սրանք էլ արտահայտում են Հայկական լեռնաշխարհի շատ հին ժամանակների կենցաղն ու գյուղատնտեսական կյանքը:

Հայոց լեզվի ամենահին բառերի մի մասն էլ մեր լեզուն վերցրել է իր հնագույն հարևաններից: Այդ հարևանները վաղուց չկան, նրանց լեզուն հազարամյակներ է, ինչ չի խոսվում, բայց այդ լեզուների մի շարք բառեր պահպանվել են հայոց լեզվի մեջ:

Մի լեզվից մյուսին բառեր են անցնում այն դեպքում, երբ այդ լեզուները և նրանցով խոսողները երկար ժամանակ հարևան են լինում:

Աշխարհի ամենահին ժողովուրդներից են եղել շումերները: Նրանք անհիշելի ժամանակներից ապրել են Միջագետքում, որ ինչպես արդեն գիտեք, գտնվում է Մեծ Հայքից, այսինքն՝ հին Հայաստանից հարավ: Շումերները հարուստ մշակույթ ստեղծեցին, նրանք են ստեղծել նաև ամենահին գրերը, այդ թվում՝ սեպագրերը, որոնցով գրում էին Արևելքի մի շարք ժողովուրդներ:

Շատ հնում շումերները բնակվում էին ամբողջ Միջագետքում, հետո նրանք կամաց-կամաց քաշվեցին դեպի հարավ: Եվ ապա՝ մ. թ. ա. 3-րդ հազարամյակի վերջում, մեզնից շուրջ 4000 տարի առաջ շումերները վերացան, ձուլվեցին այլ ժողովուրդների մեջ: Եվ այդ ժամանակներից նրանց լեզուն այլևս չի խոսվել: Չըխոսվող լեզուն կոչվում է մեռած:

Մեռած լեզուների մասին գիտնականները իմանում են հին արձանագրություններից: Շումերերեն շատ արձանագրություններ կան: Այդ արձանագրությունները երբ կարդում ենք, իմանում ենք, որ այդ լեզվից հայերենի մեջ բառեր են մըտել: Օրինակ՝ արագիլ, ագարակ, պատ, պապ, ուշ, փակ, մութ բառերը շատ հնում շումերերենից են անցել մեր լեզվին և դարձել հայերեն բառեր:

Ե՞րբ էին կարող այդ բառերը շումերերենից անցնել հայերենին: Պարզ է՝ այն ժամանակ, երբ շումերներ կային և երբ նրանց լեզուն դեռևս խոսվում էր: Այսինքն՝ մինչև մ. թ. ա. 3-րդ հազարամյակի վերջը: Սա էլ նշանակում է, որ մինչև այդ ժամանակը հայերը և շումերները շփվել են միմյանց հետ: Ուրեմն, հայերենում եղած շումերական բառերը այսօր մեզ պատմում են, որ մ. թ. ա. 3-րդ հազարամյակում (շուրջ 4—5 հազար տարի առաջ) հայերի ու շումերների միջև տարբեր հարաբերություններ են եղել՝ առևտրական, մշակութային և այլն:

Հայերենում կան նաև ասուրաբաբելական բառեր: Ասուրաբաբելացիները նույնպես բնակվում էին Մեծ Հայքի հարավում՝ Միջագետքում: Նրանք Միջագետքի երեք հզոր պետությունների՝ Աքքադի, Ասորեստանի և Բաբելոնի ժողովուրդն էին: Նրանց լեզուն կոչվում է նաև աքքադերեն:

Նրանք Միջագետքում սկզբից շատ չէին, ապա գնալով ավելի ու ավելի շատացան և շումերներին նախ քշեցին հարավ, ապա ձուլեցին իրենց մեջ: Ասուրաբաբելերեն լեզուն խոսվել է մինչև մ. թ. ա. 7—6-րդ դարերը, և մինչև այդ կային ասուրաբաբելացիներ: Հետո նրանք էլ վերացան, և նրանց լեզուն էլ մահացավ:

Ասուրաբաբելերեն լեզվի մասին էլ այսօր գիտնականները գաղափար են կազմում հին սեպագիր արձանագրություններից: Ըստ այդ արձանագրությունների գիտնականները կազմել են ասուրաբաբելերենի բառարաններ: Եվ ահա դրանց օգնությամբ մենք իմանում ենք, որ հայոց լեզվի մեջ կան նաև ասուրաբաբելերեն մի շարք բառեր: Դրանցից են՝ շոր, կնիք, կշիռ, կաշառք, կմախք, խոր, քուրմ, կիր և այլն:

Ասուրաբաբելացիներն էլ շատ վաղուց չկան, բայց ահա նրանց բառերը դարձած հայերեն բառեր՝ գործածվում են մեր լեզվում: Դրանք վկայում են, որ երեք, չորս հազար տարի առաջ հայերն ու ասուրաբաբելացիները իրար հետ շըփվել են, առևտուր արել, այցելել միմյանց երկրներ, հայերը կարողացել են նրանց լեզվով խոսել, նրանք՝ հայերի: Ասուրաբաբելերենի մեջ էլ հայերեն բառեր են անցել: Բայց ավելի շատ ասուրաբաբելերենից են հայերենին բառեր անցել: Դրա պատճառն այն է, որ այն հին ժամանակներում Միջագետքը մշակութային գլխավոր կենտրոն էր, և շրջակա բոլոր երկրները օգտվում էին նրա բարձր մշակույթից: Հայերը բացի շումերական և ասուրաբաբելական բառերից, ինչպես դեռ կտեսնենք, վերցրել են և օգտագործել նաև Միջագետքի սեպագիրը, կրել են Միջագետքի մշակութային այլ ազդեցություններ:

(շարունակելի)

## ՄԱՍՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԸՆՏՐՈՒԹՅԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

# Ուսում և աշխատանք

Իջևան քաղաքի ուսումնաարտադրական կոմբինատը, որ տեղավորված է № 4 դպրոցի առաջին հարկում, ունի հինգ տարվա պատմություն: Այս կոմբինատում են իրենց պրակտիկան անցկացնում շրջանի դպրոցների 9—10-րդ դասարանների 400 աշակերտներ:

Կոմբինատն ունի երեք արտադրամաս, հագեցած է ժամանակակից սարքավորումներով, որ միանգամայն բավարարում է այսօրվա պահանջներին, նկատելի է մաքրությունը, կարգապահությունը, աշխատանքի հանդեպ պահանջկոտությունը, այլապես շատ դժվար կլիներ վարպետ-մանկավարժների ամենօրյա, առանց այն էլ դժվար աշխատանքի կազմակերպումը: Չպետք է մոռանալ, որ մեքենայի առջև անվարժ երեխաներ են կանգնած և կարող են հոգնել, պակաս ուշադիր լինել և վնասել իրենց: Փայտամշակման արտադրամասը ստեղծվել է փայտամշակման կոմբինատի բազայի վրա և աշխատում է բացարձակապես կոմբինատի թափոնների հաշվին, որոնցից պատրաստվում են զանազան արկղեր, ծխախոտի հակավորման փայտեր, շիֆերի տակդիրներ, կայարանի բեռնաթափման հարթակներ:

Արտադրամասի վարպետ-դաստիարակ Վ. Մատինյանը մեծ աշխատանք է տանում փայտի վրա գեղարվեստական փորագրությունների փորձեր անող երեխաների հետ: Անհավասիկ նրանց պատրաստած զարդանախշ աղամանները, գդալները, զանազան դրվագված հուշանվերները: Այս տարի արտադրամասը 2500 ռուբլու օգուտ տվեց կոմբինատին:

Կոմբինատի մյուս երկու՝ ոլորման-զուգավորման և վերափաթեթավորման արտադրամասերը, ստեղծվել են շրջանի գորգագործական կոմբինատի բազայի

## «ՊԻՈՆԵՐ»—Ի ՓՈՍՏԻՑ

# Եղածը կարծես մեծ բան չէ...

Հարգելի խմբագրություն.

Ձնայած վաղուց հրաժեշտ եմ տվել պիոներական տարիքին, բայց միշտ մի առանձին սիրով եմ ընթերցում ձեր ամսագիրը: Եվ ահա կարդում եմ 1985 թ. 5-րդ համարում տպագրված Միխայիլ Զոշչենկոյի «Կրկնակոշիկները և պաղպաղակը» պատմվածքը: Հավատացեք, հուզմունքից երկար ժամանակ չէի հանգստանում: Աչքերիս առաջ անընդհատ իմ տխուր մանկությունն էր:

Հիմա արդեն 84 տարեկան եմ, ավարտել եմ Երևանի ժողովրդական տնտեսության ինստիտուտը, աշխատում եմ ավագ տնտեսագետ: Ծնվել եմ գյուղում: Երկու տարեկան էի, երբ ծնողներս տեղափոխվեցին Երևան, ինձ թողնելով տատիս մոտ: Տատիս մոտ էին նաև հորաքույրս, որը անկողնային հիվանդ էր, և հորեղբորս երկու աղջիկները՝ մեկը 4, մյուսը 8 տարեկան: Նրանց մայրը մահացել էր, իսկ հայրը բանտարկված էր նույն գյուղից 12 տարեկան մի տղայի ավտովթարի ենթարկելու համար: Այն ժամանակ ես դեռ չէի հասկանում, որ 2-րդ կարգի հաշմանդամ եմ դարձել սխալ սրսկման պատճառով: Ապրում էի մի անգիտակից շրջան, ինչպես բանաստեղծը կասեր՝ թափառում էի «անգիտությամբ բախտավոր»: Մի խոսքով դժբախտությունների մի շարան էր տիրում այդ տանը, որտեղ ես ապրում էի:

Մի անգամ հորեղբորս աղջիկների



Լուսանկարը՝ ԳԱԳԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

վրա:

Հումքը կոմբինատի թափոնները 'ն՝ թելերի մնացորդները, որոնք մեքենաների վրա, ըստ գույների, զուգավորվում, փաթաթվում, դառնում են պիտանի, ամբողջական կծիկներ և վերադարձվում գորգագործական կոմբինատին:

ՇՈՒՇԱՆԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ

---

մայրական տատը եկավ մեր տուն: Դե, բնական է, նրանք ուրախացած դուրս թռան և գրկախառնված մտան տուն, որտեղ նրան դիմավորեցինք ես, տատս և հորաքույրս: Հարցնելով միմյանց որպիսությունը, գործերից և նորություններից, տատս գնաց թոնրատուն՝ հյուրասիրության պատրաստություն տեսնելու: Ուշադրություն չդարձնելով ինձ վրա, աղջիկների տատը՝ տիկին Վարդանուշը, ձեռքի կապոցը բացեց և այնտեղից հանեց երկու տուփ «մոմպաս» կոնֆետ և տվեց մեկը՝ մեկին, մեկն էլ՝ մյուսին: Տատս ներս մտավ, ես քաշվեցի տատիս մոտ: Ակնապիշ նայում էի այդ գեղեցիկ, փայլփլուն տուփերին և մտքումս երանի տալիս նրանց տերերին: Հորաքույրս ուզեց ամեն մեկից քիչ վերցնել ու ինձ տալ, աղջիկները՝ երկուսն էլ կտրուկ, «չե՛մ տա» ասացին. ես դուրս եկա և սկսեցի անձայն, խեղդվելով լաց լինել: Իմ ետևից տատս դուրս եկավ, ու սկսեց մխիթարել.

— Ոչինչ, բալես, նրանք մայր չունեն, նրանք որբ են, քո մայրն էլ որ գա, քեզ համար կբերի:

Խաղաղվեցի, բայց իմ մանկական հոգու մեջ մի վերք մնաց: Հիմա, երբ խանութ եմ մտնում ու տեսնում եմ այդ կոնֆետները, միշտ կոկորդս սեղմվում է: Ամեն անգամ այդ դեպքը նկատի ունենալով, միշտ մի հատ ավելի եմ գնում: Ին իմանամ, հանկարծ մի երեխա կպատահի, կտամ իրեն, որ աչքը վրան չմնա:

Հորեղբորս երկու աղջիկներն էլ ամուսնացել են, ունեն երեխաներ: Հաճախ ենք հանդիպում գյուղում, հիշում մեր մանկությունը: Երբ ես պատմում եմ այս դեպքը, նրանք ասում են, որ չեն հիշում ու ծիծաղում են: Ես էլ եմ ծիծաղում, բայց իմ ծիծաղը ուրիշ է, նրանցը՝ ուրիշ: Կհասկանա՞ն նրանք այս երկու ծիծաղների տարբերությունը: Երբեք:

*(Նամակը Երևանից է, անստորագիր)*

# Զգայուն վերաբերմունք գեղեցիկի հանդեպ

Մայրաքաղաքի մանկական պատկերասրահում բացվել էր Հայաստանի Գեղագիտական դաստիարակության հանրապետական կենտրոնի դեկորատիվ-կիրառական և կերպարվեստի փորձարարական ստուդիաներում սովորող երեխաների հաշվետու ցուցահանդեսը:

Ցուցասրահում ներկայացված քանդակային, գրաֆիկական, փայտի գեղարվեստական մշակման և գոբելեն աշխատանքների միաժամանակ ցուցադրումը թեև ծանրաբեռնել էր ցուցահանդեսը, բայց չխանգարեց ըստ արժանվույն գնահատելու աշխատանքներից յուրաքանչյուրը:

Գովեստի էին արժանի հին հայկական ճարտարապետության և քանդակագործության ավանդույթով տուֆի վրա փորված զարդաքանդակները, որոնք գողտրիկ և հնաշունչ մի անկյուն էին զբաղեցնում ցուցասրահում:

Փայտի գեղարվեստական մշակման արվեստին տիրապետելու նպատակով այսօր շատ երեխաներ են հաճախում փայտարվեստի ստուդիա: Նրանց պատրաստած նախշազարդ պահպանակները, շերեփները, դեկորատիվ ամանների կափարիչները իրենց փորվածքներով և մշակմամբ վկայություն էին մանուկների ձեռք բերած հմտության:

Գունային զուսպ և պարզ հորինվածքներով գոբելենների շարքը աշխուժություն էր ստեղծում ցուցահանդեսում: Նայողի հիացմունքը ակամայից զարմանքի էր փոխվում, երբ կարդում էր հեղինակների անունները, տարիքը՝ Շեխյան Սոնա (5 տ.), Խաչատրյան Կարեն (6 տ.) և շատ ու շատ ուրիշ-



Լուսանկարները՝
ԳԱԳԻԿ
ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ





ներ, (մանկավարժներ՝ Ա. Պարոնյան, Տ. Սրապյան)։ Գոբելեններում մեծ մասամբ պատկերված էին թռչնակերպ և ծաղկանկար նախշեր, որոնք ազգային երանգ էին տալիս աշխատանքներին։ Գոբելենների կողքին ներկայացված Սահակյան Արայի (8 տ.), Դավթյան Արսենի (8 տ.) բատիկա ոճով արված յուրօրինակ ստեղծագործությունները (մանկավարժ՝ Մ. Այվազյան) ապացուցում էին, որ նույնիսկ նյութի սահմանափակ օգտագործման դեպքում կարելի է հասնել տպավորիչ արդյունքի։ Հատկապես ուշագրավ էր մանկավարժ Բ. Մեծատուրյանի սաների ձեռքով հյուսված զարդա-մոնումենտալ մակրամեն, որն իր տարածքով գրեթե մի ամբողջ պատ էր զբաղեցնում։

Գրաֆիկայի զարգացումը Գեղագիտական դաստիարակության կենտրոնի ներկայիս առաջնակարգ խնդիրներից մեկն է։ Գրաֆիկայի ստուդիայում մանուկների համար ստեղծված են անհրաժեշտ տեխնիկական հարմարություններ։ Նախորդ ցուցահանդեսի համեմատությամբ որակական մեծ առաջընթաց է կատարված այս ասպարեզում։

Ամփոփելով ցուցահանդեսից ստացած տպավորությունները, ուզում ես հիացմունքի խոսքեր ասել թե՛ շնորհալի մանուկներին, թե՛ Գեղագիտական դաստիարակության կենտրոնի ղեկավարներին։

Երեխայի մեջ հայտնաբերել և զարգացնել արվեստագետին, նշանակում է նախ և առաջ, զգայուն դարձնել նրան կյանքի բոլոր ասպարեզներում՝ գեղեցիկի հանդեպ։

ԱՆԴՐԱՆԻԿ ԴԱՅԻԲՅԱՆ



ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՏԵՂԱՆՈՒՆԸ ՀՈՒՇԱՐՁԱՆ Է



## ԱՂ ՏԱՄ, ԱՐԱ ԱՂԹԱՄԱՐ

Հայոց աշխարհի տեր Արա Գեղեցիկը Վանա ծովակի ամենամեծ կղզու վրա մի աղատուն էր սարքել, որ նման էր իսկական ամրոցի: Այդ ժամանակներում աղը ոսկուց էլ թանկ էր:

Թշնամու համար կղզին համարյա անմատչելի էր: Հայկական աղի ավելցուկը ամբարում էին այստեղ և աղապակաս տարիներին բաշխում մարդկանց: Աղատան անունով էլ հայոց գեղեցիկ լիճը կոչվում է Աղի ծովակ:

Աղատուն ամրոցի կառավարիչները Արա Գեղեցիկի հավատարիմ մարդիկ էին: Նրանք ոչ ոքի մի կտոր աղ չէին տա: Հայոց աշխարհի տերը ինքն էր անձամբ գալիս, աղը տանում կղզուց:

Բայց Արա Գեղեցիկը իզուր չէր Գեղեցիկ մականուն կրում: Ասորեստանի թագուհի Շամիրամը սիրահարվեց հայոց արքայի գեղեցիկ տեսքին և ցանկացավ զենքի ուժով տիրանալ նրան: Կռվի ժամանակ Արան զոհվեց:

Ոչ ոք չէր հավատում, թե այդ սքանչելատես մարդը կարող էր մեռնել: Շամիրամը փորձեց արալեզների օգնությամբ կենդանացնել նրան, բայց չհաջողվեց: Դե, Շամիրամից բացի ամենքն էլ գիտեին, որ ոչ մի մեռած մարդ չի կենդանանում:

Բայց արի ու տես, որ Արա Գեղեցիկի մահվան լուրին չէին հավատում նաև Վանա ծովակի կղզու աղատան պաշտպանները: Նրանք համոզված էին, որ մի օր իր պերճ առագաստանավով կղզուն կմոտենա Արա Գեղեցիկը:

Սպասեցի՜ն, սպասեցի՜ն, բայց Արան չերևաց: Զարմանում էին, թե ինչո՞ւ է ուշանում, ինչո՞ւ չի գալիս աղը տանելու: Ու սկսեցին ձայն տալ.

— Աղ տամ, Արա, աղ տամ, Արա, աղ տամ, Արա:

Մեր օրերի լեզվով սա կհնչեր այսպես՝ աղն Արային տամ:

Կղզու աղատուն ամրոցի մարդկանց ձայնը հասնում էր մինչև ծովակի ափը:

Այդպես՝ աղ տամ, Արա, աղ տամ, Արա ասելով, կղզու անունը դրեցին Աղ տամ արա, Աղտամարա, որ հետո դարձավ Աղթամար:

## ԱՂՆ ՈՒ ՋԻՆ ՊԱՀԵՔ ԱՂՁՆԵՔ

Հին-հին ժամանակներում, երբ մարդը մեռնում էր, հետը թաղում էին նրա սիրած բաները, որպեսզի հանդերձյալ աշխարհում վայելի դրանք: Մեկի գերեզմանում հաց ու ջուր էին դնում, մյուսում՝ ոսկի ու սայլ, երրորդում՝ մեղր ու գինի: Հայոց Քաղիրթ գետի ափերին էլ սովորություն կար մարդկանց հետ թաղել աղ ու ձի:

Բայց ահա Հայոց աշխարհի հզոր տի-

բակյալ Արամը, որ հոգին ավանդեց Քաղիրթ գետի ափին, մահից առաջ իր մոտ կանչեց իշխաններին ու ասաց.

— Իրավ է, մեր երկիրը հարուստ է աղով ու ձիերով, բայց անմտություն է մեծ չարչարանքով աղ հանել հողի տակից ու դյուրությամբ թաղել հողի մեջ, կամ ձին սպանել ու գցել մեռածի կողքին և ստիպել, որ որդիները մեջքով կրեն ձիու բեռը: Եվ, վերջապես, ձին միայն բեռնակիր չէ: Առանց ձիու Հայոց աշխարհը կդառնա հետիոտն և չի կարող դիմագրավել ասպատակողներին: Դրա համար էլ հրամայում եմ՝ այսուհետև մեռելների հետ ոչ աղ թաղել, ոչ էլ ձի: Աղն ու ձին պահեք, աղն ու ձին պահեք:

Ժողովրդին դուր եկավ Արամ տիրակալի աղն ու ձին պահեք խոսքը: Քաղիրթ գետի ափերին այդ խոսքն այնքան կրկնվեց, որ Հայոց աշխարհի այդ նահանգը կոչվեց Աղն ու ձին պահեք, որ հետո սեղմվեց ու դարձավ Աղձնիք:

## ԱՂՍՏԵՎ

Աղստև: Այս գետի անունը բոլորիդ ծանոթ է: Աղստևը սկիզբ է առնում Թեժլեռ սարի լանջերին, հոսում Գուգարքի և Իջևանի շրջաններով և գնում ու թափվում Կուր գետը: Նրա անտառածածկ ափերը Հայաստան աշխարհի ամենաասքանչելի անկյուններից են:

Ինչո՞ւ է այդպես կոչվում: Աղ ու ստև բառերը մեկտեղվել և ստեղծել են գետանունը: Բայց ի՞նչ գործ ունի աղն այստեղ: Չէ՞ որ այս գետի ափերին էն գլխից ոչ աղ է եղել, ոչ աղահանք: Ստև-ը որտեղի՞ց եկավ ու կպավ այս գետին: Ստև են ասում խոզի և ուղտի, ընդհանրապես սեղանման, սրածայր մազին: Ստև է կոչվում նաև բույսի փուշը:

Հնում Աղստևի ափերին փոքրիկ քարանձավներ են եղել: Մարդիկ նեղ օրվա համար աղ էին պահում այնտեղ և, որպեսզի այդ վայրը թշնամու աչքից անտեսանելի մնար, փշոտ ծառեր էին տնկում գետափերին և անմատչելի դարձնում աղատուն-քարանձավները տանող այծուղիները: Ահա այդ պատճառով ձորահովտի այդ մասերը կոչվեցին Աղստև: Հետո գետն իր վրա առավ այդ անունը:

ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ

# Տղան սպասում էր հորաքրոջը

Նկարները՝ ՖԵԼԻՔՍ ԳՅՈՒԼԱՆՅԱՆԻ

Տատը նստել էր իր թախտին ու քթի տակ հին երգ էր դնդնում: Վառարանի վրա շերտված կարտոֆիլներ էին շարված, որոնց վրա ցանած աղը մեկ-մեկ տժժում էր: Տատը գուլպան պրծել էր և թոռան գլուխը դրել գոգը՝ շոյում էր: Նրա գոգից հացի, այլուրի, խաշած կարտոֆիլի և թոնրի խարկված բույր էր գալիս:

— Հորաքույրը ե՞րբ կգա,— ասաց թոռը:

Տատը կարտոֆիլի շերտերը դարձրեց հակառակ կողմի վրա, աղը տակը մնաց ու չոր ճտճտաց: Նա կռացած էլ փչեց սատների վրա և շալի ու գլխաշորի ծայրերը ծոծրակը խրելով, տնքաց:

— Հիմի կգա,— ասաց նա:

Թոռը յոթ-ութ տարեկան տղա էր և այդ պարապ խաղաղության մեջ մշուշոտ սարուբերում էր իր շքեղ ու փառավոր օրը:

— Պապդ պիտի լիներ, որ...— ասաց տատը:— Պապդ գիտե՞ս ինչ կպատմեր,— հոգոց հանելով ավելի բարձր ասաց տատն ու գլխաշորի յուղ երկարած ծայրերի նման ժպտաց:— Պապդ կպատմեր, որ իրար հետ գնացել եք սար: Թուրքի ուրթերին չհասած՝ շները վրա են տվել, հեռվից հևալով զարկել են ձեզ, ու պապդ ասել է՝ նստիր, նստիր, ասել է պապդ, շունը նստած մարդուն բան չի անի:

— Պապը չի՞ ասել, որ երգում էր,— ասաց թոռը:

— Ծուն, երգով ասում էր պապդ, շուն, քո տերը մեր բարեկամն է. էնտեղ ոչխարը թողել է՝ էս ձորին է նայում, ինձ ու Օվանեսին, և քեզ, շուն: Քո տիրոջ բարեկամը քո բարեկամն է, շուն, դու ո՞նց ես լեզուդ գցած պառկել ու քո բարեկամին չես թողնում շարժվի: Քո տերը հիմի որ գա, քեզ կթակի, ու դու քո մտքում կարող է քո տիրոջ վրա էլ հաչես, է՛, շուն:

Թոռան գլուխը տատը հրեց գոգից, թոռը նստեց, ու տատր ահեղ նայեց:

Մի երկար լռություն ձգվեց ու ողողեց սենյակը:

Հեռվում հաչում էին շները և շարունակ զգոն պահում իրար: Պատուհանից դուրս փաթիլները դիպչելով իրար, նուրբ պառկում էին միմյանց վրա:

— Տա՛տ,— ասաց տղան,— հորքուրը որ գա, դու էլ ասա, թող երկար հեքիաթ պատմի:

Նա կարծես վախեցել էր լռությունից, տան անկյուններից ու արդեն հանգչող վառարանից: Թվում էր՝ տատի աչքերը փակվում էին, և սառը, խոշոր ձյունը ներս էր գալիս գիշերվա խոնավ, ցուրտ ահով:

Նա արագ թախտից իջավ և վառարանը աթար ու փայտ դրեց:

Լռության մեջ մի խուլ զնգոց էր օրորվում:

— Է,— ասաց տատը,— ի՞նչ ես կպել՝ հեքիաթ հա հեքիաթ, դաս կարդայիր, էգուց վարժապետդ որ հարցնի, ի՞նչ ես անելու:

Տատի կնճիռները շերտ-շերտ նստել էին ինչպես իրար վրա շարված բերաններ: Բայց հիմա ժպիտը դանդաղ, գեղեցիկ ու ընդարձակ տարածվում էր նրա դեմքին, և տատը կքած իր դիրքից, անկատելի ուղղվում էր ու ուղղվում: Երբ նա հենվեց թախտի փայտե գլխին ու այլևս չկարողացավ ուղղվելով ետ գնալ, նրա տեսքը տղային ծիծաղեցրեց: Բայց տատր չնկատեց. նրա աչքերն ու ժպիտը դանդաղ ետ էին գալիս:

— Պապիդ ո՞նց ես հիշում,— ասաց տատր:

— Եսիմ,— սկզբում՝ մտքում, հետո՝ բարձրաձայն ու վճռական ջղայնացած ասաց տղան:

— Չէ՛, չէ՛,— ասաց տատն ու ոտքերն ուղղեց:— Ասա:

Նա շերտած կարտոֆիլներ լցրեց տղայի ծնկներին, գլուխը շոյեց և ասաց, որ հորքուրը իր ամենալավ հեքիաթը դեռ չի պատմել:

— Էն շների մեջ, էն արևին պապը ձեռքը քսում էր սև շան մեջքին ու երգում,— արագ ասաց տղան, և տատը դա չընկատեց:

— Խոտի, անձրևի երգը,— հառաչեց նա:

Բայց տղան բոլորովին ուրիշ օր հիշեց ու չասաց: Եթե ասեր, տատն անպայման





լաց կլիներ ու տխուր երգ կերգեր: Բայց այդ օրվա հուշը տղային աղմուկի պես քաշեց, ու տղան սալթաքում գնաց: Այնտեղ մայիսի մի շքեղ, հնքոտ անձրև հենց հանդերում, թմբին արածող հորթի մոտ, արդար ու գիժ զարկում էր: Պապն ու ինքը հորթի տեղն էին փոխում: Պապը գլուխը բարձրացրեց, ու քիչ վերև՝ անձրեվից ամքած, ամուր գյուղն էր, հին, լքված եկեղեցին, հետո՝ թեք բարձրացող հանդերը, Աբգարի Քար բարձր ժայռ և անձրևից բարձր՝ Սուրբ Հովհաննես խենթ ու զվարթ սարը, գլուխը՝ անձրևի խիտ, հեռու բարձրությունից մառախուղ թվացող մշուշի մեջ: Խոշոր, շքեղ անձրևը՝ կաթիլների մեջ արև, պինդ զարկում էր: Մայրամուտ իջնող արեգակը սարի ետևի հեռուներում էր, բայց նրա թովուն, ցըրված լույսը անձրևի արանքով, կաթիլների միջով, Աբգարի Քար բարձր ժայռով, թաց քարերի ու խոտերի միջով և անսահման հանդերում կետերի պես մանր փռված հնձվորների, հանդապահների, հովիվների, խոտ հավաքողների ծանր շորերի ու մրսող մարմինների թափանցիկ խտության միջով իջնում էր, փայլում կարկատանի պես մաշված բոստանների վրա ու հասնում պապի դեմքին: Օվանես թոռը ասում էր. «Պապի, թրջվեցինք, արի»: Պապը բարձր բոյով մեկ խաղաղ կանգնել էր ու հանգիստ, ճերմակ մազերից արծաթի պես փայլող դեմքը անսահման տարածել: Հորթը թմբին արածում էր ու մեկ-մեկ գլուխը բարձրացնելով դեպի սարի հեռու լանջին փռված նախիրը՝ կարճ, դողդոջուն բառաչում՝ բա՜...: Թոռը պապի ձեռքից կախված՝ քաշքշում էր. «Պապի, թրջվեցինք, դե արի, պապի՛»:

Բայց տատը թախտի վրա քայլելու նըման կտրուկ շարժվեց, ու տղան սթափվեց.

— Հորաքույրդ վալ թե չգա,— հոգնած ասաց տատը:

Այն պատկերը, երբ հորաքույրը թեյի բաժակը ափերով պահած շրխկուն ծիծաղում էր ու հին պատմություններ պատմելով՝ դանդաղ մոտենում հեքիաթին, միանգամից դատարկվեց ու սենյակի լռության նման ամայի զրնգաց: Հորաքրոջ տունը հեռու էր, խանութից էլ ներքև, բայց նա ամեն երեկո գալիս էր իրենց տուն: Նա այնքան պատմություն գիտեր, որ երբ հեռուներից մյուս՝ փոքր հորաքույրերն ու հորեղբայրները գալիս էին տատին տեսնելու, նա պատմում էր ու ծիծաղում՝ մինչև կեսգիշեր կամ մինչև առավոտ: Վառարանը վառվում էր, մի քանի անգամ թեյ էին խմում, և անծայր ու հրաշալի միմյանց էին հաջորդում հորաքրոջ հին, անփոփոխ պատմությունները: Տղան միշտ պառկում էր տատի թախտի վրա, և պատմություններն այնքան հրաշալի էին, որ պառկելու ամենահաճելի ձևն անգամ շուտ-շուտ դառնում էր հոգնեցնող:

Լռության մեջ կարծես թե տնքոց լըսվեց, կարծես թե մի թանձր շունչ պտտվեց, ու կարծես թե շներն ավելի ուժեղ հաչեցին:

— Հը՞,— ասաց տատը:— Ոնց որ կովը ցավ է քաշում, թե՞ սարից գել է իջել:

Նա շարժվեց ու ձեռքը դիմհար տալով՝ ոտքերն իջեցրեց: Բայց լռությունն այնքան ամայի ու բարձր զրնգաց, որ կապույտ դուռը կարծես ավելի թանձր ու ճչան երևաց: Թվաց՝ դռան ետևը անպայման մարդ կա, որին իրենք բոլորովին չեն լսում:

— Չէ,— ասաց տատը,— բան չկա, էսօր կովին նայել եմ, համ էլ՝ տասը օր կա:

Դա այնքան հանգիստ, աղմկոտ ու հրաշալի, հին պատմության նման երկարավուն տարածվեց, որ տղային թվաց, թե դռան ետևում հորքուրն էր ու ահա ներս մտավ:

— Հորթ կունենանք,— ասաց տատը— կգնաս հանդերից խոտ կբերես. կբերե՞ս:

— Հա,— ասաց տղան:

— Էսօր հունվարի ո՞ր օրն է,— ասաց տատը:

— Քսանութը,— ասաց տղան:

— Փետրվարի յոթին-ութին հորթ կունենանք,— ասաց տատը:— Կովին շատ մոտիկ չես գնա, մեկ էլ տեսար՝ քացի տըվեց: Ու, ամառը խոտ կբերես, որ հորթը կուշտ լինի, մեծ կգնաս, մատ կգաս: Գիտե՞ս, թե որ խոտն է հիմի կովին պետք:

— Ո՞ր,— ասաց տղան:

— Մենակ ու մենակ սարի խոտը,— ասաց տատը:— Սարի խոտը մանր, փափուկ խոտ է ու ամռան համ ունի մեջը, արեգակ ունի. բա պիտի կովը լավ խոտ ուտի, որ լավ կաթ տա: Հորթը որ հիվանդ եղավ, թույլ եղավ, հետո ո՞նց պիտի կով դառնա:

Տղան կարծես անելանելի կանգնեց տատի հարցի դեմ և մտածեց, թե, իրոք, հորթը, որ հիվանդ եղավ, թույլ եղավ, ո՞նց պիտի հետո կով դառնա:

— Ո՞նց պիտի դառնա,— ասաց տղան:

Տատր կարծես թե ուրախացավ ու պատի հետ՝ թախտի անկյունում դրած երկար, տափակ բարձի տակից փոքրիկ կապոց հանեց: Դրա մեջ մանր, գույնզգգույն կտորներ կային, որոնցով նա միջար էր կարում:

— Կարմիրները ջոկջկի, տուր ինձ,— ասաց տատր:— Մորդ շորի կտորներից են, որ դու ծնվեցիր, էդ տարի հերդ էր քաղաքից բերել:

— Ո՞նց պիտի դառնա,— էլի ասաց տղան ու ձեռի հետ սկսեց կապոցը քրրքրրել:

— Էն փորր ճերմակ հորթը միտդ գալի՞ս է,— ասաց տատր:— Էն, որ ոտը ջարդել էին ու հերդ մորթեց: Մերը էդ ձմեռ փտած խոտ էր կերել ու գելից վախեցած էր. կաթը ոնց որ ջուր լիներ: Հորթը խելառի պես գարունն եկավ, մոր կաթը խեղճին գելի ահ էր տվել:

Հրաշալի, հին օդի նման նրանից բուրում էր ձյան տակ ամքած դեզի բույր: Տատր կարծես խոտի երկար, բարձր դեզը լիներ, որր ողորկ ու թեք է շարված, որպեսզի անձրևները նրա մեջ չթափանցեն: Սեպտեմբերի այն օրը, երբ հնձվորը դնում է դեզը, կարծես միակ օրն է, որովհետև հաջորդ օրն անպայման անձրև է գալիս, թրջում դեռ չհավաքած յասերը, որոնց համար հետո էլի արև է պետք, որ չորանան ու գոնե կիսով չափ պահպանեն իրենց բույրը: Բայց այդ բույրը միշտ դառը, փտած համ է պահում իր մեջ, և երբ ձմռանը կտրում են դեզը, թրջվածչորացած խոտի վրա միշտ նստած է լինում մգլահի ճերմակ, ուժեղ բուրող փառը: Եղանի քթով տնտղելու պես ջոկում, հեռացնում են փտած փնջերը և տալիս ոչխարին, որովհետև այդ խոտր ոչխարին չի վնասում: Բայց ամառ ներծծած ու հնձվելիս անձրև չտեսած խոտի բույրը ձմռան բարձր ձյան տակ դեզը շարունակ պահում է կանաչ ու նոր հնձած-չորացրածի նման: Տաք գոմում կովը խոտի այդ ամռան բույրն է ուտում: Դեռ ոտքերի վրա օրորվող հորթը՝ չիմանալով ամառն ինչ է, զգում է այդ անծայր բույրը և համառ, լուռ ուզում է այդ բույրի երջանկության մեջ վազվզել: Արյան պոռթկուն ցանկությունից փոքրիկ մարմինը, զուտ բնազդներն արթնացրած, դողդողում է, և նա արև չի ուզում՝ դեռ չիմանալով, թե արևն ինչ է: Այդ տաք բույրի հրաշալի երջանկության մեջ վազվզել է ուզում, և մայրը նրան ասում է, որ սպասի: Սպասի, որովհետև հիմա պետք է խոտի պահած բույրը շրնչել, որպեսզի մինչև ամառ նրա մեջ լինի այդ բույրի երջանկության սովորական դարձած համր, և երբ ամառր գա, նա չխենթանա, բազմաթիվ ուրիշ հորթուկների նույն հիմարությունը չանի, որովհետև գայլը...: Մայրը պատմում է գայլի մասին, որովհետև գայլի համար էլ հորթն է ամառվա բույր: Եվ իր կաթի մեջ քիչքիչ ամառվա բույրի երջանկությունն է լցնում, որովհետև հորթը ամառ չի տեսել, գայլի գաղտնի ահն ու նենգությունն է լցնում, որովհետև հորթր գայլ չի տեսել, և հորթը խաղաղ քնում է՝ քնի մեջ սպասելով, թե երբ կարթնանա:

Կովի, ամռան բույրի երջանկության, հորթուկի ու գայլի այդ պատկերը տղային այնպես քաշեց, որ նա քիթը մոտեցրեց ապակուն, որ ձյան միջով տեսնի կըքած, ձյունով կոլոլված գոմը: Ահա,— դիտելով՝ իր համար պատկերացրեց տղան, — ափերդ լայն ու ուղիղ բացում ես, ու դա՝ իբր գյուղը, հետո բռունցք անելու պես իրար կցած փոքրացնում ես, կըրացնում՝ դա էլ գոմը, բայց փոքրացնում ես այնքան, որ ներսում մութ լինի, ու վերևում թողած փոքրիկ ծակով նայում ես ներս. և եթե չկարողանաս էլ պատկերացնել, ապա այնտեղ հորթուկն ու կովը անպայման կերևան:

— Էդ, տեսնես էսօր ինչի չեկան,— անակնկալ ասաց տատր:

Չեկածներին տղան ուղղակի մոռացել էր:

Գիշերները նրանց տանր հավաքվում էին ծեր կամ միջին տարիքի տղամարդիկ ու կանայք, և տատր անցած-գնացած օրերի պատմություններ էր անում: Նրա պատմությունները հին, սնդուկից հանած շորի տեսք ունեին, բայց լուռ տղամարդկանց ու կանանց դեմ փայլում էին սքանչելի ու ջերմ գրավչությամբ: Նա այնպես էր պատմում, կարծես սնդուկից հանած հին շորը հագին պտտվում էր սենյակում: Ցածր ժխորի ու հին պատմությունների մեջ տատի հայացքն ու խոսքը հինավուրց պատգամների նման էին ողողում սենյակը, երկար ու հնաբույր դողդողում օդում և կարծես ջրի նման ներծծվում մարդկանց ու պատերի մեջ:

Այդ ուշադիր հայացքների տակ տղան միշտ պառկում էր տատի կողքին, և երբ դանդաղ սուզվում էր հին պատմությունների հրաշալի թմբիրի մեջ, հայրը այդ ժամանակ էր գնում թոնրատուն և կաղամբ

բերում: Ձմերուկի նման էին կտրում քաղցրը, սպիտակությունից ձյան կույտ երևացող կաղամբը, և ցածր ժխոր դարձող աղմուկի մեջ հայրը կաղամբի կոթունը միշտ տալիս էր իրեն: Ահա, հիմա տղան մտովի գծած տղամարդկանց ու կանանց տեսքերի միջև կաղամբ ուտելու հրաշալի աղմուկ էր երևակայում:

նախիրում էր ու շատ աղոտ էր զգում գայլին: Բայց մի պահ կարծես նրա ականջին հորթուկի կարճ, հեռուներից եկող բառաչ է հասնում, և գայլի երկար, ողողուն ահն է սեղմում մարմինը: Նա վեհերոտ, անվստահ կմտածի, որ իր հորթուկը ցածի ապահով հանդերում է, ուրիշ հորթուկների մեջ հիմա պառկած որոճում



— Հա՛,— անակնկալ, ինքն իրեն ասաց տատը,— Խաչոյի կովը ցավում էր: Տեսնես է՞գ է բերել, թե՝ որձ: Հերվա էգ հորթին գարնան գլուխ գելը պատառոտել էր:

Մառախլապատ, ամպոտ օրվա պաղ պատկեր սահեց տղայի միջով, որտեղ գայլը սուսուփուս, փափուկ դուրս էր լողում մշուշից ու մեծ թռիչք անում դեպի միամիտ հորթուկը: Նրա մայրը հեռու է, և դրան կհավատա ու չի հավատա, կհավատա ու չի հավատա:

— Ըհը՛, էս էլ էսպես,— ասաց տատը և ձեռքով հարդարեց ծնկներին փռված նոր միզարը:— Թոնիրի թմբիկին կփռեմ՝ վրան կպառկես:

Տատի ձայնի տակ շրխկալով ու ճռճռոցով բացվեց դուռը, և երևաց նախասենյակի մութ ու ձյունոտ գետինը: Հայրն ու

մայրը ներս մտավ հին ընկերների նման ծիծաղելով, և մայրն իբր թե շտապ-շտապ վազեց արդեն հանգչող վառարանի մոտ, ու քիչ հետո նրա կանգնած տեղում գետնի մանր փոսիկների մեջ ջուր ցվեց: Տղան դժկամ նայեց մոր զվարթ, օտարի նմանվող տեսքին, և կարծես նրա շորերից բուրող սառնությունը դանդաղ ողողեց սենյակը: Չար, օտարացած հայացք էր տղայի հայացքը:

— Հո չթողեցիր տատդ գելից վախենար, Օվանես,— ասաց հայրը: Տղան լուռ, կծկվելու պես ոտքերը տակը քաշեց, թե՝ ես ինձ համար անշառ նստել եմ, և գլուխը հենեց յուսամուտագոգին:

Հայրը հոգնած ու կանչով հորանջեց և դանդաղ սկսեց ծամել կարտոֆիլի պաղած շերտը:

— Գոմ գնայիր, տեսնեիր կովը ոնց է, — ասաց տատը:— Ոնց որ թխթխոց էր գալիս:

— Աղջի, վառարանը մի երկու կտոր փետ գցի, տունը տաքանա,— ասաց հայրն ու վեր կացավ գոմ գնալու:

Նրա հետ մայրն էլ դուրս եկավ, դռների ձայնից մի պահ աղմուկ օրորվեց սենյակում, և բազմաթիվ ոտնաձայների նման ներս թափանցեց հոր ոտքերի տակ դեպի գոմ բացվող նոր արահետի ձյան ճռճռոցը: Տղան դրանից ավելի օտար զգաց իրեն, նա բոլորովին-բոլորովին չէր ուզում, որ հայրն ու մայրը օտարի պես երևային, որպեսզի ինքը այսպես չհեռանար նրանցից և մնար միայնակ ու լքված:

Մայրը աթար ու փայտ բերեց, շարեց հանգած մոխրի մեջ ու, նավթը ներս նետելով՝ դեմքը շրջեց: Բոցը դուրս ցայտեց վառարանի դռնակի կլոր անցքերից և իսկույն էլ ներս քաշվեց: Սենյակում ծխահամ, նավթի սուր հոտ, թեթև աշխույժ ու կրակի մանր աղմուկ տարածվեց:

Տղան այդ ամենի դեմ որբ ու օտար, համարյա թե ուզում էր լաց լինել, նրա ներսը կարծես միանգամից դատարկվել էր, եթե փորձեր բառ ասել, ձայնը չպիտի դուրս գար: Իրեն օտար էր զգում, ուրիշի տան՝ ուրիշի երեխա, մթան պատճառով այդ օտար տանը մնացած՝ առավոտը կգա, ինքը կգնա իրենց տուն ու այլևս չի հեռանա այնտեղից: Նա լուռ ու կծկված թմրում էր իր չարության մեջ:

— Հովո՛, Հովի՛կ,—ասում էր մայրը:— վեր կաց՝ հանվի, Հովիկ ջան, հանվի, նոր քնի... Հովհա՛ննես:




ԱԶԱՏ
ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

## Հրաշալի այգին

Միջնադարում շատ տարածված էին այլաբանական բանաստեղծությունները: Գրում էին, ասենք, վարդի ու սոխակի մասին, բայց ի նկատի ունեին քրիստոնեական զանազան գաղափարներ: Սակայն գնալով ավելի ու ավելի հաճախ կրոնական բացատրությունները մոռացվում էին, մնում էր բանաստեղծի ոգևորությունը իրական աշխարհի պատկերներով:

15-րդ դարում ստեղծվել է մի հրաշալի այլաբանական երկ, որի մեջ կրոնական

գրեթե ոչինչ չկա: Դա կյանքի ամենագեղեցիկ գովքերից մեկն է, երբևէ ստեղծված հայ գրականության մեջ: Բանաստեղծության հեղինակն է միջնադարի մեր սիրված բանաստեղծ Գրիգորիս Աղթամարցին: Բանաստեղծությունը վերնագրըված է «Տաղ ի վերայ նորաշէն տուն և այգի ունեցողի և լալու» («Տաղ նորաշեն տուն և այգի ունեցողի և լալու մասին»):

**Քար եմ բերեր սարերոյս,**
**Փուշ եմ կրեր ձորերոյս,**
**Պատ եմ բոլորեր այգոյս,**
**Կասեն, թե «Ա՛րե՛կ, ել այգոյս»:**

(Քար եմ բերել սարերից, Փուշ եմ բերել ձորերից, Պատ եմ քաշել այգուս շուրջը, Ինձ ասում են, թե՝ այգուց դուրս արի): Դարեր շարունակ մեր երկրում քարի ու փշի հետ կռիվ տալով, այգիներ են ստեղծել, հողը մշակել, և այսպիսի պատկերներ մեր թափառական բանաստեղծը երևի շատ է տեսել իր կյանքի ընթացքում:

**Ջուր եմ բերել յեռներոյս,**
**Աղբիւր եմ շինել այգոյս,**
**Դեռ չեմ խըմեր ի ջրոյս,**
**Կասեն, թե «Ա՛րե՛կ, ել այգոյս»:**

(Ջուր եմ բերել լեռներից, Աղբյուր եմ շինել իմ այգում, Դեռ չեմ խմել ջրից, Ինձ ասում են, թե՝ դուրս արի այգուց): Պարզ, անզարդ խոսքերը պատմում են աշխատավոր մարդու մասին, որն այնքան չարչարվելուց հետո չի վայելում իր աշխատանքի պտուղները:

**Հընձան եմ շիներ այգոյս,**
**Կարաս եմ թաղեր գինոյս,**
**Դեռ չեմ խմեր ի գինոյս,**
**Կասեն, թե «Ա՛րե՛կ, ել այգոյս»:**

(Հնձան եմ շինել այգու մեջ, Գինու կարաս եմ թաղել, Դեռ այդ գինուց չեմ խըմել, Ինձ ասում են՝ դուրս արի այգուց):

**Տուն եմ շիներ մեջ այգոյս,**
**Ոսկով նախշած չարտըխնուս,**
**Դեռ չեմ վայլեր շենքերոյս,**
**Կասեն, թե «Ա՛րե՛կ, ել այգոյս,**
**Այս իմ նորաշէն տներոյս»:**

(Տուն եմ շինել իմ այգում, Ոսկով նախշել պատերը, Դեռ չեմ վայելել իմ շենքերը, Ինձ ասում են՝ դուրս արի այգուց, իմ այս նորաշեն տներից):

Բայց ո՞վ է այդպես համառորեն պահանջում դուրս գալ այդ հրաշալի այգուց, դեռ չվայելած նրա բարիքները, ո՞վ է խանգարում չարքաշ աշխատավոր մարդուն տեր լինել իր արդար վաստակին: Պատասխանը ակնարկվում է սկզբում.

**Յամեն առաւոտ և լոյս**
**Գաբրիէլն ասէր հոգոյս.**
**«Արի, ել ի յայս այգոյս,**
**Այս իմ նորատունկ այգոյս»:**

(Ամեն առավոտ Գաբրիելն ասում էր հոգուս՝ Դուրս արի այս այգուց, Այս իմ նորատունկ այգուց):

Խոսքը Գաբրիել հրեշտակի մասին է, որն ըստ քրիստոնեական հավատալիքների՝ աստծու հրամանով գալիս էր մարդկանց հոգիների ետևից: Այսինքն՝ Գրիգորիսը բողոքում է մահվան դեմ: Այսպես խոսել մահվան մասին հակառակ էր քրիստոնեական միջնադարյան ըմբռնումներին: Այս «անցավոր» աշխարհին, ըստ կըրոնի, մարդիկ մեծ արժեք չպետք է տային, որովհետև հետո գնում, միանում են աստծո հետ (մահվան նկատմամբ այսպիսի վերաբերմունք էր պահանջում քրիստոնեությունը): Բայց այս բանաստեղծության մեջ ասվում է, որ մարդն ինքն է ստեղծում իր հրաշալի այգին, ինքն է շենացնում աշխարհը: Դրանից էլ նրա կապվածությունը աշխարհին շատ ավելի ամուր է: Մարդու համար իր չարչարանքով ստեղծածը հազարապատիկ թանկ է, քան անհայտ, անտեսանելի աստծու պարգևածը:

Անկախ իր այլաբանական բնույթից այս բանաստեղծության մեջ շատ անմիջականություն ու զգացմունք կա: Երբ բանաստեղծը ներկայացնում է դաժան պահանջը՝ «Արեկ, ել այգոյս», ավելացնելով՝ «Այս իմ հորատունկ այգոյս» կամ՝ «Այս իմ նորաշեն տներոյս», ավելի ընդգծվում է պահանջի անարդարությունը: Բանաստեղծության կարճ տողերի յուրահատուկ մեղեդայնությունը ավելի սրտառուչ է դարձնում մարդու բողոքը:

Բանաստեղծությունը վերջանում է չորս հրճվագին տողերով, որոնց մեջ այգուց հեռանալու պահանջը չկա, դրա փոխարեն տրված է ծաղկուն այգու պատկերը.

**Պլպուլըն կանչէ այգոյս,**
**Առաւօտէն մինչ ի լոյս,**
**Ցօղն իջանէ ի յայգոյս**
**Յամեն առաւօտ և լոյս:**

(Սոխակն է երգում իմ այգում Առավոտից մինչև լույս, Ցողն է իջնում իմ այգում Ամեն առավոտ):

Ուրեմն, աշխարհը մարդու ձեռքով ըստեղծված այգի է: Այսպիսի գեղեցիկ և խորիմաստ բանաստեղծություն է ստեղծվել 15-րդ դարում:

ՅՈՒՁԱՍ ՆԵԿՐՈՇՅՈՒՍ
(լիտվացի մանկագիր)

# Մեղուները

Նրանց գործը շատ է դժվար՝
Հեռի տակ են միշտ տուն գնում,
Բայց դե, նրանց գործը արդար
Լույս մեղրով է վարձատրվում:

Մեղրը քաղցր է և օգտակար
Դեղորայք է հազարանուն,
Ապաքինում մարմինը մեր,
Եղած ցավը դուրս է հանում:

Հարյուրավոր փեթակների
Ամրոցներն են դեղնին տալիս,
Իսկ նրանցից հուլիսյան տաք
Արեգակի բույրն է գալիս:

Դու հուլիսին նեկտար շնչիր
Ծաղիկներից հազարաթերթ,
Մեղուներին էլ չսպանես,
Բարի եղիր նրանց հանդեպ:

# Բերքը

Մեր ձեռքերը շատ
Խրձեր կապեցին,
Մեր ձեռքերը շատ
Հասկ հավաքեցին:

Մենք ինչքա՞ն ցորեն
Կալսեցինք այստեղ,
Մեր ձեռքերով է
Մեր երկիրն ուժեղ:

Եվ այդ ցորենով՝
Հրաշք ու բարի,
Մեր հայրենիքի
Ամբարներն են լի:

Թարգմ. ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆԻ
Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Գիշերային երկնքում գիսավորի հայտնությունը ամենաուշագրավ երևույթներից մեկն է: Պատահական չէ, որ «պոչավոր աստղերի» մասին, ինչպես դրանց անվանում էին անցյալում, մեծ քանակությամբ տեղեկություններ են պահպանվել պատմագրության մեջ և դրանք թափանցել են նաև ժողովրդական բանահյուսության ու պատմական դեպքեր պատկերող նկարների մեջ: Այդպիսի համընդհանուր ուշադրությունն ու հետաքրքրությունն արդյունք է այդ օբյեկտների չափազանց խորհրդավոր տեսքի:

Սովորաբար գիսավորները հայտնվում են աղոտ միգամած լույսի բծի տեսքով, աստիճանաբար սկսում են մեծանալ, գծագրվում են նրանց առանձին մասերը: Այնուհետև, հասնելով առավելագույն չափերի՝ սկսում են փոքրանալ ու աղոտանալ, մինչև անհետանում են վերջնականապես...

Մեր օրերում բավականին մեծ քանակությամբ տեղեկություններ են հայտնի այդ զարմանահրաշ լուսատուների մասին, հաշվարկված են բազմաթիվ գիսավորների շարժման հետագծերը, և մեծ ճշգրտությամբ կանխագուշակվում է դրանց հայտնվելու ժամանակը: Այդ քաջատեղյակությանը նախորդել են բազմաթիվ հարյուրամյակներ, որոնց ընթացքում մարդկությունը խուճապի էր մատնվում «պոչավոր աստղերի» տեսքից: Երկնքում գիսավոր հայտնաբերելով աստղագուշակներն սկսում էին հայտարարել, որ սպասվում են պատերազմներ ու համաճարակներ, ջրհեղեղներ ու այլնայլ արհավիրքներ, որոնք սպառնում էին կործանել աշխարհը: Գիսավորների հայտնությանն առանձնապես մեծ սարսափով էին սպասում միապետները, որոնք համոզված էին, որ դրանք գալիս են հատկապես իրենց անհանգստություն պատճառելու: Որքան էլ ծիծաղելի թվա, պորտուգալական թագավոր Ալֆոնս 6-ը 1664 թվականին նույնիսկ փորձել է ատրճանակի կրակոցներով վախեցնել ու հեռու քշել երկնքում հայտնված գիսավորին:

Բազմաթիվ ու բազմապիսի են մինչև այժմ դիտված գիսավորները, բայց դրանց թվում կա մեկը, որն առանձնահատուկ տեղ է գրավում: Երբ 1682 թվականի ամռանը 26-ամյա անգլիացի աստղագետ Էդմոնդ Հալլեյը հայտնաբերեց այդ գիսավորը, նրա մտքով երևի չէր էլ անցնում, որ իր անունն անմահանալու է

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ՄԻՋՄՈԼՈՐԱԿԱՅԻՆ ԹԱՓԱՌԱԿԱՆԻ ՎԵՐԱԴԱՐՁԸ

հենց դրա շնորհիվ: Գիսավորի չափերն աճում էին բավական արագ, և օգոստոսի վերջին նրա գեսը երկնքում տարածվում էր մոտավորապես 80° երկարությամբ: Դա իսկապես շքեղ պատկեր էր...

Այդ գիսավորի հայտնվելը զուգադիպեց գիտության համար շատ նշանակալից ժամանակաշրջանի: Իսահակ Նյուտոնը հայտնագործել էր տիեզերական ձգողականության օրենքը, որը հնարավորություն էր ընձեռում հաշվարկել երկնային մարմինների շարժման ուղեծրերը: Եվ քանի որ մինչ այդ ոչ ոք չգիտեր, թե ինչպիսի հետագծերով են շարժվում գիսավորները, Հալլեյը Նյուտոնից խնդրեց տեսականորեն պարզել, թե ինչպիսի ուղեգծեր կարող են ունենալ դրանք: Հետազոտությունները հանգեցրին շատ կարևոր հետևության, ըստ որի գիսավորները կարող են պտտվել Արեգակի շուրջը փակ կորերով՝ էլիպսներով: Այդ նշանակում էր՝ նույն գիսավորը Արեգակին կարող է մոտենալ և Երկրից դիտվել բազմաթիվ անգամ...

1705 թվականին Հալլեյն արդեն հաշվարկել էր 14-րդ դարից հետո դիտված մոտավորապես երկու տասնյակ գիսավորների ուղեծրեր, որոնց մասին հիշատակություններ կային գրականության մեջ: Նա նկատեց, որ 1607 թվականին դիտված գիսավորի ուղեծիրը շատ նման է իր կողմից դիտվածի ուղեծրին: Պատահականությու՞ն էր այդ, թե՞ դրանք նույն լուսատուի երկու արձանագրություններ էին: Դժվար չէ պատկերացնել գիտնականի հուզմունքն ու ուրախությունը, երբ պարզվեց, որ նույնպիսի ուղեծիր է ունեցել նաև 1571 թվականին դիտված գի-

սավորը: Ուրեմն՝ դա պատահականություն չէր, ուրեմն՝ դա նույն գիսավորն էր, որ հայտնվում էր 75—76 տարին մեկ:

Ելնելով այդ երեք արձանագրությունների ժամանակագրությունից, Հալլեյը վստահորեն հայտարարեց, որ այդ գիսավորը հաջորդ անգամ Երկրից կերևա 1758 թվականին: Դա, թերևս, առաջին այդպիսի երկարաժամկետ կանխագուշակումն էր աստղագիտության պատմության մեջ, և դրա իրականացումը կարող էր դառնալ աստղագիտության աննախադեպ հաղթանակ: Ահա թե ինչու էին աստղագետներն անհամբերությամբ սպասում այդ տարեթվին, որը կարող էր բերել կամ հուսախաբություն, կամ հաղթանակ: Ցավոք, Հալլեյին չվիճակվեց ապրել մինչև իր կանխագուշակած տարին: Նա արդեն ծեր էր և վախճանվեց 1682 թվականին՝ 85 տարեկան հասակում....

Եկավ սպասված 1758 թվականը: Անցան նրա առաջին ամիսները, իսկ երկնքին ուղղված աստղադիտակները դեռևս չէին հայտնաբերում Հալլեյի գիսավորը: Ֆրանսիացի մաթեմատիկոս Ալեքսիս Կլերոյի ենթադրությամբ գիսավորի ուշացման պատճառը կարող էր լինել հսկա մոլորակների՝ Յուպիտերի և Սատուրնի ձգողական դաշտը: Որպեսզի ապացուցի իր վարկածի իրավացիությունն ու գտնի ուշացման ճշգրիտ չափը, մոտավորապես վեց ամիս նա իր երկու օգնականների հետ աշխատում էր առավոտից մինչև ուշ գիշեր:

1758 թվականի նոյեմբերին հաշվարկների արդյունքները ներկայացվեցին Փարիզի գիտությունների ակադեմիային: Կլերոյի վարկածը հաստատվեց՝ գիսավորն ուշանում էր Յուպիտերի և Սատուրնի ազդեցության պատճառով, ուշանում էր 618 օրով: Նրա որոնումներն սկսեցին նոր թափով, և այս անգամ բախտը ժպտաց սիրող աստղագետ Յոհան Պալիչին, որը դիտումներ էր կատարում Դրեզդենի մոտակայքում: Ծննդյան տոնի գիշերը՝ դեկտեմբերի 25-ին, նա վերջապես գտավ գիսավորը Ձկների համաստեղությունում...

Այդ նշանակալից տարեթվից անցել է ավելի քան երեք հարյուրամյակ: Այդ ընթացքում Հալլեյի գիսավորը ևս երկու անգամ հայտնվել է մեր մոլորակի երկնքում, աստղագետները բազմաթիվ գիտական տեղեկություններ են կուտակել նրա մասին: Պատմագրության մանրամասն ուսումնասիրության շնորհիվ գրվել է գիսավորի ավելի քան 22-դարյա կենսագրությունը: Մեր թվարկությունից առաջ 240 թվականի մայիսի 25-ից հետո այդ հռչակավոր գիսավորը 29 անգամ այցելել է Արեգակին ու մեր մոլորակին:

Եվ ահա կրկին մոտենում է Արեգակին: Այս հանդիպմանը աստղագետները սպասում էին շատ վաղուց, որովհետև ժամանակակից տեխնիկայի հզորությունը հնարավորություն կտա պարզել բազմաթիվ գաղտնիքներ, որոնք անհայտ են մնացել հետազոտողների նախորդ սերունդներին: Այդ նպատակով դիտումներին մասնակցելու են ոչ միայն Երկրի վրա գտնվող աստղադիտակները, այլև արդեն դեպի գիսավորի հետ հանդիպման վայրը թռչող մի քանի տիեզերական կայաններ: Այդ հանդիպումները կկայանան եկող տարվա մարտի առաջին կեսին Երկրից հարյուր միլիոնավոր կիլոմետր հեռավորության վրա:

Իսկ մինչ այդ գիսավորը շարունակում է իր արագությունն անընդհատ ավելացնելով թռչել դեպի Արեգակ, որին ամենամոտ կետով կանցնի փետրվարի 9-ին: Հոկտեմբերից այն դիտվում էր ոչ մեծ աստղադիտակների օգնությամբ: Նոյեմբերի ընթացքում նրա դիտման պայմանները շարունակվեցին լավանալ, սակայն այն անտեսանելի մնաց անզեն աչքի համար: Ընդհանրապես Հալլեյի գիսավորի ներկա հայտնությունը դիտումների տեսակետից թերևս ամենավատթարն է վերջին երկու հազար տարիների ընթացքում: Այնուամենայնիվ, սուր տեսողություն ունեցողները դեկտեմբերի վերջին կկարողանան այն տեսնել Ջրհոսի համաստեղությունում երեկոյան երկնքի արևմտյան մասում: Ամբողջ 1986 թ. հունվար ամսվա ընթացքում գիսավորը շարունակելու է շարժվել այդ համաստեղության սահմաններում, և չնայած նրա պայծառությունը անընդհատ աճելու է, տեսանելիությունը կդառնա ավելի ու ավելի վատ՝ Արեգակին շատ մոտ գտնվելու պատճառով: Գիսավորը նորից կհայտնվի մարտի ընկըզբին Այծեղջյուրի համաստեղությունում, և այն արդեն հնարավոր կլինի տեսնել արևածագից անմիջապես առաջ, երկնքի արևելյան մասում: Դրանից հետո նրա պայծառությունը կըսկըսի արագորեն նվազել: Գիսավորը կըսկըսի հեռանալ, որպեսզի վերադառնա միայն 75—76 տարի հետո...

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# Հոր խոսքը որդուն

Մեկը մի օր ծառ է տնկել,
Որ խնձորն այս դու վայելես,
Մեկը մի օր տուն է սարքել,
Որ «իմ տունն է» դու քեզ ասես:
Մեկը նստել, գիրք է գրել,
Մեկ ուրիշը՝ երգ հորինել,
Ճամփա բացել,
Կամուրջ կապել,
Որ դու անցնես,
Կարդաս, երգես:
Հացն էլ, որ կա քո սեղանին,
Հո չի՞ ընկել հենց երկնքից,
Ջուրն էլ, մինչև քեզ հասնելը,
Անցել է բյուր սար ու ձորից:
... Դու էլ, որդիս, եղիր այնպես,
Որ անունդ կապած լինես
Մի օգտակար բանի այնպես,
Որ հեռավոր
Պայծառ մի օր
Մե՛կն էլ ինձ պես
Բարի խոսքով հիշի և քեզ:



Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



● Մի զբոսաշրջիկ որոշում է Ավստրալիայի գետերից մեկի գետաբերանում լողանալ։

— Այստեղ շնաձկներ չկա՞ն,— հարցնում է նա տեղի բնակիչներին։

— Ոչ, այստեղ շնաձկներ երբեք չեն հանդիպում՝ վախենում են գետում լողալ...

Զբոսաշրջիկը սուզվում է և անմիջապես գնդակի նման դուրս թռչում գետից՝ նրա ետևից կոկորդիլոս էր ընկել։

— Դուք ինձ խաբեցիք,— գոռում է նա բնակիչների վրա։

— Մի քիչ,— պատասխանում են նրանք։— Դուք հարցրիք շնաձկան մասին։ Բայց շնաձուկ այստեղ իրոք չկա։ Հատկապես կոկորդիլոսներից էլ վախենում է.... Իսկ կոկորդիլոսների մասին դուք չհարցրիք։

● Աշխարհի նշանավոր վարպետների պատրաստած ջութակները հաշվառված են, և նրանց տերերը հայտնի են։ Պատմում են, որ Կրեյսլերի հետ այսպիսի մի դեպք է պատահել։

Անտվերպենի կոմիսիոն կրպակներից մեկում Կրեյսլերը տեսնում է մի ջութակ, որի տեսքից նրա ծագումը դժվար էր որոշել։ Բարձր գնից Կրեյսլերը հասկանում է, որ կրպակի տերը ջութակ ճանաչում է։ Որպեսզի համոզվի դրանում, նա հանում է իր ջութակը և առաջարկում է կրպակատիրոջը գնել այն։ Ծերուկը պատասխանում է, որ ինքն այդքան հարուստ չէ, որպեսզի այդ ջութակն իր իսկական արժեքով գնել կարողանա։ Հետո ավելացնում է, որ կուզենար ցույց տալ իր ջութակը, բայց տանն է։ «Ես ձեզ մի քանի րոպե միայն կսպասեցնեմ, տունս մի քանի քայլի վրա է»,— ասելով հեռանում է նա։

Ցուտով վերադառնում է ոստիկանի ուղեկցությամբ և, ցույց տալով Կրեյսլերին, ասում է.

— Կալանավորեք նրան, նա գողացել է Կրեյսլերի ջութակը։

Նշանավոր ջութակահարի մոտ ոչ մի փաստաթուղթ չի լինում։ Տեսնելով, որ գործը կարող է վատ ընթացք ունենալ, նա վերցնում է ջութակը և նվագում իր «Զքնաղ հազրեվարդը»։

Ծերուկը հիանում է և հավատացնում շվարած ոստիկանին, որ իր առջև կանգնած է ինքը՝ Կրեյսլերը, քանի որ ոչ ոք, բացի նրանից, չէր կարող այդքան փայլուն կատարել այդ ստեղծագործությունը։



● Գերմանացի հանրահայտ դաշնակահար և կոմպոզիտոր Մաքս Ռեգերը համերգի ժամանակ Շուբերտի «Կարմրախայտ» կվինտետում դաշնամուրի պարտիան կատարելուց հետո, մի երկրպագուից ստացավ մի զամբյուղ կարմրախայտ։ Ռեգերը նամակով շնորհակալու-

թյուն հայտնեց, կատակով ասելով, որ հաջորդ համերգի ժամանակ կատարելու է հայտնի «Ցուլի մենուետը»:



Պագանինին ուշանում էր համերգից: Կառք վարձելով, խնդրեց շուտ հասցնել թատրոն և ապա հարցրեց.

— Ինչքա՞ն պետք է վճարեմ:

— 10 ֆրանկ:

— Կատակու՞մ եք:

— Մտքովս էլ չի անցնում: Դուք 10 ֆրանկ եք վերցնում յուրաքանչյուրից, ով այսօր լսելու է Ձեր նվագը մի լարի վրա:

— Լավ,—պատասխանեց Պագանինին: — Ես կվճարեմ Ձեզ 10 ֆրանկ, միայն թե դուք ինձ թատրոն հասցրեք մեկ անիվով:

Ռուս նշանավոր կոմպոզիտոր Բորոդինը, որ աչքի էր ընկնում իր ցրվածությամբ, մի անգամ տնից դուրս գալիս մտածելով, որ իր բացակայության ժամանակ կարող է բարեկամներից որևէ մեկը այցի գալ, դռան վրա կպցնում է մի գրություն. «Կգամ մի ժամից»:

Որոշ ժամանակ անց վերադառնալով և տեսնելով գրությունը, նա շատ վշտանում է.

— Ինչ անհաջողություն, միևնույն է, ոչինչ անել չես կարող:

Հառաչելով տեղավորվում է դրսի նստարանին և սպասում... ինքն իրեն:

Մի անգամ Բելգիայի թագավոր Ալբերտը և նրա կինը՝ թագուհի Ելիզավետան, Էյնշտեյնին թեյի հրավիրեցին:

Թեյից հետո սիրողական համերգ տըրվեց: Համերգին մասնակցում էր թագուհին, որը, լինելով Իզաիի աշակերտուհին, բավական լավ էր ջութակ նվագում: Էյնշտեյնն ինքը լավ ջութակահար էր, նա ուշադիր լսեց թագուհու նվագը, և, երբ թագուհին ավարտեց, դիմեց նրան՝ բեղի տակ ժպտալով:

— Դուք հիանալի էիք նվագում, ձերդ մեծություն: Դուք այնքան լավ էիք նվագում, որ ես ինձ թույլ եմ տալիս հարցնել՝ Ձեր ինչի՞ն է պետք թագուհի լինելը:

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Զարմանալի թռչուններ են հանդիպում Հարավային Ամերիկայի անտառներում:

Չաչալակ թռչունը տեղի բնակիչների համար ծառայում է որպես իսկական բարոմետր: Անձրևներից մի քանի ժամ առաջ նա բարձր և զիլ ճչում է:

Աղավնիները լավագույն փոստատարներն են: Վերջերս գիտնականները փորձ են կատարել տարբեր թռչունների վրա, պարզելու, թե հնարավոր չէ՞, արդյոք, նրանցից էլ փոստատարներ պատրաստել:

Լավագույն ընդունակություններ ցուցաբերեցին սուզաբադները, որոնք ապրում են Բրիտանական կղզիներում: Ինքնաթիռով նրանց տարել են ԱՄՆ-ի Բոստոն քաղաք և բաց թողել: Մի քանի օրից թռչունները հայտնվել են տանը և որոնել իրենց բները:



# ՇԱԽՄԱՏԻ ԱՇԽԱՐՀԻ





Յուրաքանչյուր տարի ծնվում են աշխարհի բազմաթիվ չեմպիոններ, սահմանվում են հարյուրավոր ռեկորդներ և գրանցվում անակընկալներ, որոնք մտորումների քիչ տեղիք չեն տալիս: Սակայն կա մի մարզաձև, որտեղ չեմպիոնը դառնում է մարդկային մտքի և հնարավորությունների չափանիշ: Այո, շախմատն է դա, որտեղ չեմպիոնները արժանանում են առանձնակի պատվի, հռչակվում արքա: Արքա, առանց չակերտների, արքա բառի բուն իմաստով:

Վիլհելմ Ստեյնից, Էմանուիլ Լասկեր, Խոսե Ռաուլ Կապաբլանկա, Ալեքսանդր Ալյոխին, Մաքս Էյվե, Միխայիլ Բոտվիննիկ, Վասիլի Սմիսլով, Միխայիլ Տալ, Տիգրան Պետրոսյան, Բորիս Սպասսկի, Ռոբերտ Ֆիշեր, Անատոլի Կարպով և... Գարրի Կասպարով՝ Բաքվի օտար լեզուների մանկավարժական ինստիտուտի ուսանող, 22-ամյա մի նոր առեղծված: Այլ կերպ չես անվանի Կասպարովին, որը չնայած երիտասարդական տարիքին, մրցաշարից մրցաշար շախմատային աշխարհում նոր հեղաշրջում է կատարում, ստիպելով ամենատիտղոսավոր գրոսմայստերներին վերանայել իրենց տեսակետները, վերաբերմունքը հինավուրց և հավերժ երիտասարդ խաղի նկատմամբ:

Շախմատը մարդկային մտքի մեծագույն արգասիքներից է, որի ստեղծագործական հնարավորությունները անսահմանափակ են:

Այսպես, օրինակ, սկզբնախաղում թե սպիտակ, թե սև ֆիգուրները ընտրության համար ունեն քսան տարբեր քայլեր: Առաջին քայլից հետո այդ թիվը դառնում է 28 և ապա աստիճանաբար սկսում ավելանալ, իսկ երբեմն էլ՝ պակասել, և այսպես մինչև վերջին քայլը:

Եթե նույնիսկ ընդունենք, որ յուրաքանչյուր դիրք միջին հաշվով կողմերի համար ունի տասը տարբերակ և գրի առնենք դրանք առանձին թերթիկների վրա, ապա այդ թերթիկները պահելու համար կպահանջվի մի վիթխարի, անսահման մեծ քարտադարան:

Աշխարհի նորընծա չեմպիոնի մասին խոսելիս տեսաբանները նախ և առաջ նշում են, որ նա գիտի այնքան սկզբնախաղ, որքան 28 գրոսմայստեր միասին վերցրած...Դա նույնպես առեղծված է...

Գարրի Կասպարովը շախմատ սկսել է խաղալ հինգ տարեկանից, 11 տարեկանում դարձավ վարպետության թեկնածու, 13—14-ում նվաճեց պատանիների Սովետական Միության չեմպիոնի կոչումը, 15 տարեկանում լրացրեց սպորտի վարպետի նորման, 16 տարեկանում՝ միջազգային կարգի վարպետի նորման, 17 տարեկանում դարձավ միջազգային գրոսմայստեր և նվաճեց պատանիների աշխարհի չեմպիոնի տիտղոսը: 1981 թվականին Կասպարովը հռչակվեց Սովետական Միության չեմպիոն: Նա միջազգային մի խոշոր մրցաշարերի հաղթող է, շախմատի օլիմպիադաների կրկնակի չեմպիոն (1980—1982): 1980 թվականի Եվրոպայի և 1982 թվականի աշխարհի երիտասարդական թիմային առաջնությունների հաղթող: Սպորտի վաստակավոր վարպետ Գարրի Կասպարովը 1982 և 1983 թվականներին ճանաչվել է աշխարհի լավագույն շախմատիստ...

Այսպիսին էր նրա մարզական կենսագրությունը, երբ հաղթահարելով հավակնորդների մրցաշարերի բոլոր արգելքները, «երես առ երես» հանդիպեց աշխարհի 12-րդ չեմպիոնի հետ:

Այն 72 պարտիաները, որոնք աշխարհի նախկին և նորընծա չեմպիոնները անցկացրին ստեղծագործական մտքի տեսանկյունից ամենաբարձր մակարդակով, թերևս մի քանի տարվա անսպառ նյութ պարգևեցին շախմատային հեղինակություններին: Դրանց մեծ մասը (եթե ոչ բոլորը) նոր խոսք էին մարզաձևի տեսությունում:



# ՆՈՐ ՉԵՄՊԻՈՆԸ

Երկու տարի առաջ կայացած հարցազրույցներից մեկի ժամանակ Կասպարովն ասել էր. «Ես երջանիկ եմ, որ գտել եմ իմ տեղը կյանքում: Դա ոչ թե այսօր եմ զգացել, այլ 14 տարեկանում: Արդեն այն ժամանակ հասկացա, թե որն է իմ կոչումը: Շախմատն ինձ համար միջոց է՝ հասնելու հնարավորությունների ինչ-որ նոր, ավելի բարձր սահմանի...»:

Իսկ ահա թագադրությունից անմիջապես հետո, լրագրողների այն հարցին, թե ինչ զգացումներ ունի այժմ աշխարհի ամենաերիտասարդ չեմպիոնը, Կասպարովը պատասխանեց.

— Ես երջանիկ եմ:

Կանցնեն տարիներ, գնալով ավելի ու ավելի վառ կփայլատակի աշխարհի 13-րդ չեմպիոնի տաղանդը, իսկ դա նշանակում է, որ այս մոգական խաղի զինանոցը կհարըստանա շախմատային նոր գլուխգործոցներով, որոնցից յուրաքանչյուրը կդառնա յուրօրինակ հիմն մարդկային մտքին...

ՀՈՎՀ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ



# Ուսուցիչը

«Պիոներ» ամսագրի խմբագրական կոլեգիայի երկարամյա և եռանդուն անդամ, բազմավաստակ մանկավարժ, գրականագետ ու հմուտ թարգմանչուհի Վարսենիկ Եսայանը մոտ քառասուն տարի Երևանի Մաքսիմ Գորկու անվան դպրոցում դասավանդում էր հայոց լեզու և գըրականություն, դրսևորելով մանկավարժի եզակի օժտվածություն: Բախտավորություն է եղել յուրաքանչյուրի համար, ով աշակերտել է նրան: Եսայանի դասերը հանդիսացել են մայրենի լեզվին և գրականությանը հաղորդակցվելու, գրական արվեստի գեղեցկություններին վերահասու լինելու և սքանչանալու ժամեր:

Բարձրագույն դպրոցներում ընդունելության քննություններ տալիս Եսայանի աշակերտները աչքի են ընկել մայրենի լեզվի և գրականության խոր իմացությամբ: Եսայանը իր աշակերտներին ոչ միայն գիտելիքներ էր տալիս, լեզվի և արվեստի ճաշակ ներարկում, այլև հոգեկան սրտագին կապերի մեջ էր գտնըվում նրանց հետ նաև դպրոցից դուրս, նաև դպրոցն ավարտելուց հետո, կանգնած մնալով նրանց կողքին իբրև ուղեկից և խորհրդատու՝ դժվար հարցերի առաջ կանգնելիս:

Եսայանը մնաց իբրև մարդու և ուսուցչի իդեալ իր աշակերտների համար: Նրա օրինակով, նրան ընդօրինակելու, նրան նմանվելու ձգտումով նրա շատ և շատ աշակերտներ նվիրվեցին ուսուցչի դըժվարին ու բարձր կոչմանը, դասավանդում են մայրաքաղաքի դպրոցներում և վայելում բարի համբավ:

Եսայանի մանկավարժական գործունեության սահմանները շատ ընդարձակ էին: Նրա մասնակցությամբ են կազմվել 8-րդ դասարանի «Հայրենի գրականություն» և 7-րդ դասարանի «Գրականություն» դասագրքերը: Եսայանը ՀՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր տերմինաբանական կոմիտեի և Պետական մըրցանակների կոմիտեի անդամ էր: Պարգևատրվել է Լենինի և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով, Խ. Աբովյանի և Ն. Կրուպսկայայի անվան մեդալներով, կրում էր հանրապետության վաստակավոր ուսուցչի բարձր կոչումը:

Վարսենիկ Եսայանի կերպարը երկար կապրի նրանց հետ, ովքեր ճանաչում էին նրան: Նա դեռ երկար ուղեկցելու է իր աշակերտներին և օգնելու նրանց, ովքեր իրենով ներշնչված, այժմ գործում են ուսուցչության ասպարեզում՝ շարունակելով նրա թողած բարի ավանդները:

**«ՊԻՈՆԵՐ»-Ի ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15, Հեռախոսները՝ 56—82—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.



Լուսանկարը՝
**ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ**

**«ՊԻՈՆԵՐ» № 11-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ՝**

| | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 8 | + | 2 | − | 5 | + | 3 | = | 8 |
| + | | − | | − | | + | | : |
| 6 | − | 2 | + | 5 | − | 7 | = | 2 |
| 14 | + | 0 | − | 0 | − | 10 | = | 4 |

Հանձնված է տպագրության 03.09.1985 թ.։ Ստորագրված է տպագրության 03.12.1985 թ., ՎՖ 10223։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակը՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 68032։ Պատ. 1971։ Գինը՝ 15 կ.

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 03.09.1985 г. Подписано к печати 03.12.1985 г. Формат 70×100 1/16. ВФ 10223. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 68032. Заказ 1971. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

ԻՆԴԵՔՍ՝ 77806
ԳԻՆԸ՝ 15 կոպ.



# Ուշադրություն

«Պիոներ» ամսագրի խմբագրությունը հայտարարում է ինքնանկարի և ազատ թ ե մ ա յ ո վ շարադրության մրցույթ: Մասնակցել ցանկացողները իրենց աշխատանքները պետք է ուղարկեն կամ ներկայացնեն խմբագրություն:

Մրցույթների արդյունքները կամփոփվեն ամսագրի 1986 թ. դեկտեմբերյան համարում:

Աշխատանքերն ուղարկելու վերջին ժամկետը օգոստոսի 15-ն է: